# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ՊՐՈԼԵՏԱ



Ստեփան Շահումյանի մասին գրելիս, ընտրածդ ամենագունեղ բառերն անգամ անուժ, աղքատ են թվում նրա իրական մեծությունը ցույց տալու համար: Մնում է ներկայացնել նրա կյանքի տարեգրությունը, թողնելով, որ դեպքերն ու իրադարձությունները, կատարած գործերը, պատմեն նրա մասին:

Ստեփան Գևորգի Շահումյանը ծնվել է 1878 թ. Թիֆլիսում: Դեռևս աշակերտական տարիներին, կարդալով Բելինսկու, Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Նալբանդյանի աշխատությունները, պատանի Ստեփանը գլխավորում է դպրոցականների «Ծիածան» գաղտնի խմբակը, նրա նույնանուն ամսագրի էջերում ընդվզում սոցիալական անհավասարության, ազգային ճնշման դեմ, գտնում, որ ազատությունը ձեռք է բերվում միայն հեղափոխական պայքարով: 1900 թ. Ստեփանը ընդունվում է Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիական ֆակուլտետը, ներգրավվելով այնտեղ հեղափոխական պայքարում, ծանոթանում մարքսիզմին: Նույն թվականին էլ դառնում է ՌՍԴԲԿ անդամ: Շահումյանի հեղինակությունը արագ աճում է, նա դառնում է Ռիգայի բազմազգ ուսանողության առաջնորդը, կազմակերպում միտինգներ, ցույցեր: Այդ ամենի համար 1902 թ. նա վտարվում է ինստիտուտից և արտաքսվում Կովկաս:

Վերադառնալով Թիֆլիս, Շահումյանը ձեռնամուխ է լինում Անդրկովկասի հեղափոխական ուժերի համախմբմանը: 1902 թ. ամռանը կազմակերպում է «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», հրատարակում «Պրոլետարիատ» թերթը, որը հայերեն առաջին մարքսիստական օրգանն էր: Անդրկովկասը ալեկոծվում է Շահումյանի կրակոտ հոդվածներից և ելույթներից: Նա պայքարի կոչ էր անում աշխատավորներին. «Կոչ՝ բռնակալության դեմ, կեցցե քաղաքական ազատությունը»:

Ուսումը շարունակելու նպատակով Շահումյանը մեկնում է Գերմանիա և ընդունվում Բեռլինի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետի պետական իրավունքի բաժինը: Արտասահմանում նա

# ԾԱՂԿԱՁՈՐՈՒՄ

ԳԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Խարույկ էինք մենք վառում
Թեղենիսի լանջերին
Եվ ունկնդրում լեռնապահ
Արծիվների կանչերին:

Լողում էինք ձկան պես
Քո փրփրան գետերում,
Երգի ձայնը մեր զնգուն
Ղողանջում էր եթերում:

Ամրացել ենք կաղնու պես
Ծաղկածիծաղ քո ծոցում,
Իսկ այժմ նոր եռանդով
Սովորում ենք դպրոցում:



# ԱՌԱՋԻՆ ԶԱՆԳ

ՍԱՄՎԵԼ ԿՈՍՅԱՆ

Ի՞նչ է,
Ծեկո՞ն է, թե՞ մեր Ծեկոն չէ:
Մեր Ծեկոն կարճ էր,
Այս ե՞րբ բարձրացավ,
Այս ե՞րբ մեծացավ,
Այս ի՞նչ կատարվեց...
Նրա ժպիտից
Մանկությունս անցավ,
Ես էլ դարձա մեծ:
Ես ի՞նչ անուն տամ
Այս զգացումին,
Գուցե սեպտեմբե՞ր,
Կամ զա՞նգ առաջին...

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# ՐԻԱՏԻ ԱՌԱՋՆՈՐԴԸ

շփվում է Ա. Բեբելի, Ֆ. Մերինգի, Գ. Պլեխանովի հետ, 1903 թ. գարնանը Շվեյցարիայում անձամբ ծանոթանում Վ. Ի. Լենինի հետ: 1905 թ. Ռուսաստանում ռռնկվում է առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, և Շահումյանը վերադառնում է Թիֆլիս, մասնակցում հեղափոխական մարտերին, ընտրվում ՌՍԴԲԿ IV և V համագումարների պատվիրակ: 1907 թ. տեղափոխվում է Անդրկովկասի պրոլետարական կենտրոնը՝ Բաքու: Հեղափոխությունը պարտություն էր կրել, և ցարիզմն անցել էր հարձակման: Սակայն Շահումյանը չի դադարեցնում հեղափոխական աշխատանքը: Ցարական կառավարությունը փակում է «Բակինսկի ռաբոչի» թերթը, Շահումյանը հրատարակում է «Վոլնա» ամսագիրը, կառավարությունը արգելում է «Վոլնան», Շահումյանը հիմնադրում է «Սովրեմեննայա ժիզն» շաբաթաթերթը, ռեակցիան դա էլ է փակում, Շահումյանը հրատարակում է «Նոր խոսք» հայերեն երկշաբաթաթերթը: Կատաղած ժանդարմները ձերբակալում են Շահումյանին, մոտ մեկ տարի պահում բանտում, ապա աքսորում Անդրկովկասից: Հաստատվելով Աստրախանում, Շահումյանը շուտով դառնում է տեղի բանվորական շարժման առաջնորդը, մշտապես նամակագրական կապ պահպանում Վ. Ի. Լենինի հետ: 1913 թ. գաղտնի մեկնելով Պետերբուրգ, նա միաժամանակ գլխավորում է «Պրավդա» թերթի աշխատանքներ:

1914 թ. Շահումյանը կրկին Բաքվում է, կրկին գլխավորում է



# ԱՅՑԵԼՈՒԹՅՈՒՆ ԵՐԿԻՐ ՄՈԼՈՐԱԿԻՆ

(Ֆանտաստիկ պատմվածք)

*12 մայիսի, չորեքշաբթի, 3177 թ.*
*Երկիր մոլորակի ուղեծիր, Տիեզերք*

Գիտեի, որ մի օր լինելու է այդ, բայց բոլորովին այլ կերպ էի պատկերացնում, երբեք մտքովս չէր անցել, որ դա կկատարվի իմ աչքի առաջ՝ հենց իմ աչքի առաջ: Մեր հին, շատ հին երկրագունդը չքացավ, ոչնչացավ, կորավ անհետ: Պապս պատմում էր, որ այնտեղի մեր տունը փլվեց հենց մերոնց աչքի առաջ, նրանց օդ բարձրանալուց մի քանի վայրկյան հետո: Ես լավ եմ հիշում մեր այդ տունը: Մեր բարձր շենքի երկարուկ պատշգամբում ես հաճախ էի փայլուն, կլորիկ օճառե պղպջակների փունջ փչում աշխարհի վրա, որը հիմա չկա: Երևի երկար նայեցի այդպես, որովհետև, երբ ուշքի եկա, արդեն հեռացել էինք մեր արեգակնային համակարգությունից: Սթափվելով, հիշեցի, որ մենակ չեմ եկել Երկրին այցի: Իմ տիեզերանավի ապակուց երևում էին իմ ուղեկից 4 տիեզերանավերը, որոնց վարորդները նույնպես տեսան երկրի կործանումը: Միայն մենք հինգս ցանկացանք այցելել Երկիր, մյուսները որոշեցին այն դիտել հեռուստացույցով:

Ես տիեզերանավի արագությունը ավելացրի ու ինձ մենակ զգացի տիեզերքում, իմ շուրջը սպիտակ աստղեր էին, հսկայական երկնային մարմիններ:

Ահա Լույս մոլորակը, որը այնքան հավանել է որդիս: Նա չուզեց ինձ հետ գալ, այս ճամփորդությունը նրան չգրավեց:

Մոտենում եմ մեր նոր երկրին, որը որդուս համար սիրելի աշխարհ, հայրենի երկիր, մի խոսքով՝ տուն է: Ես նախանձում եմ որդուս, շատ եմ նախանձում: Նրա համար ամեն ինչ նոր է սկսվում, իսկ իմ կյանքը կիսվեց մի քանի րոպե առաջ: Չկայած Երկրում՝ իմ տանը, ապրել էի 6 տարի, իսկ նորում՝ 30, բայց էլի կիսվեց կյանքս:

Ես վայրէջք կատարեցի այստեղի դաշտում ու հիշեցի մեր կանաչ դաշտը՝ կարմիր կակաչներով ու մի իշուկով, որի հենց ոտքերի տակից սկսվում էր երկինքը՝ կապույտ, պայծառ, աչք ցավեցնելու չափ պայծառ: Սրան էլ են դաշտ կոչում, նրան էլ էին դաշտ կոչում: Սրա ոչ մի բանը նման չէ նրան: Սա ճիշտ հակառակն է՝ կարմիր խոտ (նույնիսկ չեմ ուզում խոտ ասել) ու կանաչ ծաղիկներ, անճաշակ դեղին երկինք և ոչ մի իշուկ, որի ոտքերի տակից սկսվի երկինքը՝ իմ երկինքը: Զարմանում եմ, թե ինչպե՞ս եմ հիշում հին աշխարհը: 6 տարին քիչ է, բայց ինչպես ամեն ինչ տակնուվրա եղավ մեջս, չէ՞ որ ընդամենը

---

Անդրկովկասի բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը: Ցարական ոստիկանությունը աչքը չի կտրում նրանից: Բաքվի ժանդարմական վարչությունը, նշելով, թե որքան վտանգավոր է Շահումյանը, 1916 թ. մարտի 18-ին ոստիկանության դեպարտամենտին հաղորդում էր. «Շահումյանը համարվում է Կովկասի ամենազարգացած և ամենափորձված կուսակցական աշխատողներից մեկը, որի հետ կապվում են բոլոր շրջանները և արտասահմանում ապրող կուսակցական անձինք»: Շահումյանը կրկին աքսորվում է:

1917 թ. փետրվարյան հեղափոխությունը ազատություն բերեց Ռուսաստանի քաղաքական բանտարկյալներին: 1917 թ. մարտին Շահումյանը ընտրվում է Բաքվի նորաստեղծ Սովետի նախագահ, մասնակցում Պետրոգրադում կայացած Սովետների I Համառուսաստանյան համագումարին, կուսակցության VI համագումարում ընտրվում է Կենտկոմի անդամ:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո, Սովետական Ռուսաստանի Ժողկոմսովետը Շահումյանին նշանակում է Կովկասի Գործերի Ժամանակավոր Արտակարգ Կոմիսար: Շահումյանի ջանքերով Բաքվում հաստատվում է սովետական իշխանություն: Նա ընտրվում է Բաքվի նորաստեղծ Ժողկոմսովետի նախագահ և արտաքին գործերի կոմիսար: Սակայն հակահեղափոխական ուժերը, դաշնակցած գերմանա-թուրքական և անգլո-ամերիկյան ինտերվենտների հետ, պաշարում են քաղաքը: Բաքվի պրոլետարիատը Շահումյանի գլխավորությամբ հերոսական մարտեր է մղում քաղաքի համար: Շահումյանի կողքին կռվում էին նաև նրա պատանի որդիները՝ Սուրենն ու Լևոնը: Ուժերն անհավասար էին և հուլիսի 31-ին անգլիական ջոկատները մտնում են Բաքու: Շահումյանը և մյուս կոմիսարները ձերբակալվում են: Սեպտեմբերի 15-ին Բաքու են մտնում թուրքական զորքերը: Անգլիացիները նահանջում են, ձերբակալված կոմիսարներին թողնելով թուրքերի դատաստանին: Ա. Միկոյանի հե-

մեկ օր առաջ ես նույնպես հիանում էի այս «դաշտով» և խորհուրդ էի տալիս որդուս նկարել այն, իսկ հիմա չեմ կարող առանց չակերտների գրել «դաշտ» բառը:

Ի՜նչ երջանիկ կլինեի Երկիր մոլորակի վրա, իմ տանը, որը ոչնչացավ իմ նմանների անկգուշության պատճառով: Իսկ որդի՜ս... Նա չի տեսել Երկիրը...

Իսկ մյուսնե՞րը, իմ երկրակիցնե՞րը, Երկրի մարդի՞կ. չե՞ն մտածում նույնը՝ ինչ ես հիմա, հենց այս վայրկյանին:

Հիմա մենք օտար ենք, օտարական ենք:
Չեմ ուզում այսպես:
Չեմ ուզում...

ՆԱԻՐԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ
Երևանի № 143 միջն. դպրոց. 8-րդ Բ դաս.



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ





# ԱՇՆԱՆԱՅԻՆ

Երկնքի զուլալ լազուրը
Ամպերով է արդեն ծածկվել,
Դաշտերի կանաչը արդեն
Ոսկեգույն շղարշով պարուրվել:

Նորքի բարձունքում հիմա
Աղմկոտ քամին է սուլում,
Գույնզգույն մի վրձին առած՝
Շրջում է աշունն անտառում:

Եվ խոնավ անտառի միջով
Ծամփան է ձգվում անվերջ,
Գույնզգույն թիթեռներ դարձած՝
Տերևներն են ճախրում օդի մեջ:

ԿԱՐԻՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Երևանի № 157 միջն. դպրոց, 10-րդ դաս.







դափոխական ջոկատին հաջողվում է կոմիսարներին փախցնել և հասցնել Աստրախան մեկնող «Թուրքմեն» նավը, սակայն անգլիական նավերը «Թուրքմեն»-ին ստիպում են խարիսխ գցել հակահեղափոխականների ձեռքում գտնվող Կրասնովոդսկում: Սեպտեմբերի 20-ին Կրասնովոդսկից 207 վերստ հեռավորության վրա, Ստեփան Շահումյանը իր 25 կոմիսար ընկերների հետ գնդակահարվում է:

Շահումյանի սպանության լուրը ցնցեց հեղափոխական Ռուսաստանը: Նրան ճանաչողների համար շատ դժվար էր հաշտվել այն մտքի հետ, որ Շահումյանն այլևս չկա: Նրա կինակիցների և Անդրկովկասի պրոլետարիատի սրտից էին բխած Վահան Տերյանի հետևյալ խոսքերը. «Եվ այժմ ինձ այնպես է թվում, որ դեռ պիտի տեսնեմ նրան, այդ ազնիվ, լուսեղեն մարդուն, որի սքանչելի պատկերը միշտ անջինջ, միշտ կենդանի է իմ հոգում, որի հմայիչ պատկերը երբեք չի կարող մոռանալ ով երբևիցե բախտ է ունեցել տեսնել ու ճանաչել նրան՝ Ստեփան Շահումյանին...»

ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՍԱՀԱԿ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ





# ՄԻ ՀԵՔԻԱԹ ԿԱ ԼՈՒՅՍԻ ՄԱՍԻՆ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Կեսօրը վաղուց անցել էր:

— Բարև՛,— ասաց երիտասարդը:

Նա նստեց մամռոտ մեծ քարին, ծերունու կողքին, որ ծխամորճն ատամների արանքում ամուր պահած, նրան էր նայում:

— Եկա՞ր,— ավելի շուտ հաստատեց, քան հարցրեց ծերունին:

— Ուշացա,— ասաց երիտասարդը,— շատ գործ ունեի:

Նրանց ոտքերի մոտ չորանում էր նոր հնձած խոտը, որի բույրը բռնել էր շրջապատը:

— Մոռանում ես,— ասաց ծերունին,— առաջ ավելի շուտ-շուտ էիր գալիս:

— Չեմ մոռանում,— առարկեց երիտասարդը:— Քանի գնում՝ գործը շատանում է: Ես պետք է հասցնեմ մի բան անել...

— Մի հեքիաթ կա լույսի մասին,— ընդհատեց ծերունին:— Գիտե՞ս...

— Չգիտեմ,— ասաց նա:

— Շատ ուժեղ լույսը կարող է կուրացնել: Դու խելոք մարդ ես, երևի գիտես այդ:

Երիտասարդը գլխով արեց:

— Մեկը, որ ուզում էր կռվել խավարի դեմ, լույս հնարեց,— շարունակեց ծերունին:— Սկզբում լույսն այնքա՜ն լավ էր, հաճելի: Նա մի քիչ էլ ուժ տվեց իր լույսին ու կախեց մարդկանց գլխավերևում, որպեսզի խավարը չկարողանա անհանգստացնել նրանց: Ամենուրեք լույս էր: Մարդիկ այլևս չէին խարխափում խավարում: Հետո նրանցից մեկն իմացավ լույսի գաղտնիքն ու սկսեց ավելի ու ավելի ուժեղացնել այն... Հասկանո՞ւմ ես...

— Հասկանում եմ,— ասաց երիտասարդը:— Այնքան ուժեղացրեց, որ կուրացավ...

— Ոչ միայն ինքը: Երբ լույսը շատ պայծառացավ, մարդիկ անհանգստացան ու սկսեցին բողոքել լույսի դեմ: Պատկերացնո՞ւմ ես, սկսեցին բողոքել լույսի դեմ...

— Բայց լույսը մեղավոր չէր,— առարկեց երիտասարդը:— Նա միայն լուսավորում էր, բարի գործ էր կատարում: Մեղավորը նա էր, ով անցնում էր չափը...

— Մարդկանց դա չէր հետաքրքրում,— ասաց ծերունին:— Նրանք միայն լույսն էին իրենց թշնամի համարում: Եվ մտածում էին, ինչպե՞ս պայքարել լույսի դեմ: Եվ մինչև նրանք հնարը գտան, շատ մարդիկ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



## ՃԱՅԵՐԸ
(Լեգենդ)

*Ասում են, ճայերը աղջիկներ են եղել...*

*Եթե նավաստիներին հարցնենք, անպայման կհաստատեն, անպայման կասեն՝ ճիշտ է: Այնպիսի սիրով, այնպիսի կարոտով կպատմեն, որ հնարավոր չէ չհավատալ: Ճայերը նավաստիների ամենասիրելի թռչուններն են, իսկ նավաստիները ճայերի ամենասիրելի մարդիկ: Ուստի որտեղ ծով ու նավաստի՝ այնտեղ են ճայերը...*

*Ասում են, ճայերը աղջիկներ են եղել, ջահել աղջիկներ: Նավաստիները սիրել են նրանց, նրանք էլ նավաստիներին՝ մաքուր ու անբիծ սիրով:*

*Նավակներով պտտվել են նրանք միասին ծովի լուրթ ջրերի վրա: Երեկոները խաղաղ ծովափին նստած, կրուցել են: Լուսինը վերից ժպտացել է նրանց ու իր շողքը, արծաթավուն սանդուղքը նետել իր բարձունքից մինչև նրանց ոտքերի տակ, իսկ նիրհող ծովի ալյակները կախվել, շղթայել են ջրերին կախված նրանց ոտքերը:*

*Հետո եկել է նրանց բաժանման պահը:*

*Աղջիկները թաշկինակով ճանապարհ են դրել նավաստիներին:*

*Ու սպասել են նրանց վերադարձին երկա՜ր, երկա՜ր...*

*Սպասելուց ու կարոտից աղջիկները դարձել են ճայեր:*

*Հիմա ամեն անգամ, երբ նավը հեռանում է ափից, լուռ ուղեկցում են նրանք նավաստիներին հեռո՜ւ-հեռո՜ւ:*

*Իսկ երբ հորիզոնում նշմարվում է մոտեցող նավը, նրանք ուրախ ու աշխույժ ճախրանքներով թռչում են ընդառաջ:*

*Ասում են, ճայերն աղջիկներ են եղել:*

ԴԱՎԻԹ ՄԱՆՈՒԿՅԱՆ
Նաիրիի շրջ., գ. Թզիբ, 8-րդ դաս.

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



կուրացան: Նրանց համար ամեն ինչ հավերժորեն թաղվեց խավարում: Լույսի պատճառով...

Ծերունին ձեռքի ափով ջոկեց քարի մամուռը, ապա վառեց հանգած ծխամորճը:

Որոշ ժամանակ նրանք լուռ էին: Մթնշաղ էր իջնում: Հնձած խոտի միջից ծղրիդները երգով դիմավորում էին երեկոն:

— Դե պատմի՛ր, պատմի՛ր,— ասաց ծերունին:— Ի՞նչ նորություններ կան քո աշխատանքում: Ասում են, էներգիայի նոր աղբյուր ես գտել...

— Մարդիկ առանց այդ էներգիայի գոյատևել չեն կարող,— ոգևորվեց երիտասարդը:— Էներգիայի բոլոր տեսակներն արդեն սպառվում են, իսկ իմ հայտնագործած էներգիան անսահման է, անսպառ: Մարդկության պահանջները նա կարող է բավարարել անհաշիվ հազարամյակներ...

— Լավ է, լավ է,— քաջալերեց ծերունին:— Ես միշտ էլ համոզված էի, որ դու մարդկության համար լավ գործ կանես, այնպիսի գործ, որը երբեք չի մոռացվի:

— Դե, անում եմ այն, ինչ կարող եմ,— ասաց երիտասարդը:— Ամեն ոք մի բան անում է, իր ուժերի ներածին չափ:

— Մի քանի հազար տարի առաջ մեկը նետ ու աղեղ էր հայտնագործել,— հիշեց ծերունին:— Ցույց տվեց իր հայտնագործած զենքը և ժամերով պատմում էր, թե ինչ հրաշք բան է այն, ինչքան կհեշտացնի մարդկանց կյանքը, որովհետև նրանով ավելի հեշտ է որս անելը...

Երիտասարդը գրպանից գլանակ հանեց ու, քամուց պաշտպանվելով, վառեց:

— Լույսի մասին քո արած պատմությունն, իհարկե, հեքիաթ չէր,— նկատեց նա:— Ես հենց սկզբից հասկացա դա:

— Ես գիտեի, որ կհասկանաս, թե չէ պատմելն իմաստ չէր ունենա,— ասաց ծերունին:

Նա վեր կացավ տեղից ու քայլեց չորացող խոտի վրայով: Դանդաղ-դանդաղ քայլում էր նա դեպի հեռուն, որտեղ երկինքն ու երկիրը հորիզոնի գծով միանում էին իրար: Երիտասարդը նայում էր նրա ետևից:

— Նույնիսկ ամենաարդար լույսը կարող է հանցագործ դառնալ, եթե նրան հանցավոր նպատակներով օգտագործես,— ասաց նա ինքն իրեն:— Բայց դա չի նշանակում, որ լույս հայտնագործել չի կարելի: Ծերուկն այդպիսի բան չասաց: Նա իմաստուն մարդ է, կասեր, եթե պետք լիներ: Եթե մարդիկ հնարավոր վտանգներից խուսափելով, հրաժարվեին հայտնագործություններից, ապա դեռ խարխափելիս կլինեին նախնադարյան խավարում, անձավներում կծկված սպասելիս կլինեին բնության ողորմությանը:

Հորիզոնի գծի մոտ նշմարվում էր հեռացող ծերունու ուրվանկարը: Նա քայլում էր դանդաղ ու ծանր քայլերով, և երիտասարդը զարմանքով նկատեց, որ ինքը շարունակում է նրան շատ լավ ու որոշակի տեսնել, չնայած նրա հեռավորությանը:

— Այս ծերունին և իր պատմածը երբեք չեն հեռանա իմ տեսադաշտից,— հանկարծ հասկացավ նա:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ՍԵՐՄՆԱՑԱՆՆԵՐ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Թե որ երկնքում չլինեն ամպեր,
Չեն լինի ամպրոպ ու ծիածան,
Որոտ չի լինի և անձրևաբեր
Քամին չի ոռնա ահեղաձայն:

Թե որ ծառերը տերև չունենան,
Չեն խշշա գարնան հովի թևին,
Աշնանամուտին ճյուղերին նրանց
Մրգեր չեն ժպտա ոսկեդեղին:

Թե որ գարնանը շաղ չտան սիրով
Սև հերկերի մեջ սերմացու հատիկ,
Չի ծփա արտը կանաչ ծիլերով,
Չի դառնա մեկը բյուրապատիկ:

Գիտելիքները երկինք են, տղա՛ս,
Հոգու երկնքում ամպեր են խիտ,
Նրանք ծառեր են մրգերով հասած,
Նրանք հասկեր են բերում մտքիդ:

Սերմնացաններ են գրքերն աշխարհում,
Մտքի հերկերում՝ ոսկե հատիկ,
Գարնանամուտին ով սերմ է ցանում,
Ունենում է տաք ամռան ժպիտ:

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԱՄԵՆԱԵՐԻՏԱՍԱՐԴ ՇՐՋԱՆԸ

Ավանի ձորի սկզբում, երկաթգծի քարակերտ կամրջից սկսվում ու մինչև Զրվեժ է հասնում մայրաքաղաքի ամենաերիտասարդ՝ Սովետական շրջանը, որը դեռ չի բոլորել իր ծննդյան առաջին տասնամյակը, բայց երկու տասնյակից ավելի գործարաններ, ֆաբրիկաներ, տրեստներ ունի։

Երիտասարդ շրջանին են նվիրված ստորև տպագրված նյութերը։



# ՇՐՋԱՆԸ ՓԱՅՏԱՄԱԾՆԵՐԻ ՄԵՋ

ՊԱՎԵԼ ՍԱՖՅԱՆ
*ՀԿԿ Սովետական շրջկոմի առաջին քարտուղար*



1972 թ. ապրիլին Երևան քաղաքում ծնունդ առավ մի նոր շրջան, որը ՀՍՍՀ Գերագույն սովետի հրամանագրով կոչվեց Սովետական։ Սովետական շրջանը ստեղծվեց Երևանի հյուսիսարևելյան տարածքի վրա, իր մեջ առնելով Զեյթուն, Քանաքեռ, Ավան, Նոր-Նորք բնակելի զանգվածն ու Զրվեժի թաղամասերը։

Մի քանի տարվա ընթացքում երբեմնի ղռերի ու անմշակ տարածությունների վրա հառնեց մի ինքնատիպ ժամանակակից քաղաքամաս։ Կառուցվեց և շահագործման հանձնվեց ավելի քան 750 հազար քառ. մ բնակելի տարածություն, ավելի շատ, քան Երևանի պետական բնակելի ֆոնդն էր 1950 թվականին։ Նոր բնակարաններ ստացան կամ իրենց բնակարանային պայմանները բարելավեցին շուրջ 18 հազար երևանցիներ։ Այսօր Նոր-Նորքի բնակելի զանգվածում ապրում է 110 հազար մարդ, երկու անգամ ավելի, քան Երևանն ուներ 1926 թ.։ Կառուցվեցին տասնյակ դպրոցական և նախադպրոցական շենքեր, կոմունալ, կենցաղային, առևտրական օբյեկտներ ու ձեռնարկություններ։

Շրջանի դպրոցներում հիմնականում լուծված է մեկհերթյա պարապմունքների խնդիրը։ Նախադպրոցական հասակի 10 հազար երեխաներ ընդգրկված են շրջանում գործող 37 մսուր-մանկապարտեզներում։

Զրվեժում կառուցվել են արդյունաբերական և տրանսպորտային մի շարք նոր ձեռնարկություններ։ 1972 թ. իր առաջին արտադրանքը տվեց հանրապետության առաջին կաշվե-գալանտերեայի ֆաբրիկան։ Մայրաքաղաքի փողոցներով սկսեցին երթևեկել № 3 տրոլեյբուսային հավաքակայանի մեքենաները։

Բնակչության և պիոներ-դպրոցականների ակտիվ մասնակցությամբ զգալի աշխատանքներ ծավալվեցին շրջանի բարեկարգման և կանաչապատման ուղղությամբ։ Կոչ ուղղվեց շրջանի բնակչությանը՝ «Յուրաքանչյուր ազատ տարածության վրա՝ ծառ ու թուփ» նշանաբանով։ Այդ կոչը լայն արձագանք գտավ շրջանի ողջ աշխատավորության, նաև դպրոցականների շրջանում։

Չորս տարվա ընթացքում շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների, բնակչության և պիոներ-դպրոցականների ուժերով տնկվեցին 420 հազար ծառ ու թուփ, ստեղծվեցին 9 այգի ու պուրակ։ Ծառերի խնամքի և պահպանության շեֆությունը իրենց ձեռքը վերցրին շրջանի պիոներ-դպրոցականները։ Յուրաքանչյուր դպրոց խնամք է տանում շրջանում ստեղծված այգիներից մեկին։

Բացվեցին նոր փողոցներ, բարեկարգվեցին բազմաթիվ բակեր, հիմնադրվեց պատմական հուշարձանների թանգարան-այգին, Գայի փողոցի երկայնքով դրվեցին արձանիկներ։ Նոր-Նորքի զանգվածի նորաստեղծ այգում, Գայի փողոցի առանցքի

# ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

Սովետական շրջանը գտնվում է բարձր ու գեղեցիկ տեղանքի վրա, միջին բարձրությունը ծովի մակերևույթից 1200—1300 մետր է: 10—12 տարվա ընթացքում կառուցված շրջանը քաղաքաշինական մի ամբողջություն է ներկայացնում, համալրելով մեր մայրաքաղաքի համայնապատկերը:



Շրջանն ունի 37 մսուր-մանկապարտեզ, 35 դպրոց՝ 31 հազարից ավելի աշակերտներով, 16882 պիոներ: Այս տարի ինքնատիպ ամառ եղավ բոլոր աշակերտների համար: Բացի տարբեր վայրերում հանգստանալուց, շրջանի 21 դպրոցներում ոչ թե բակային, այլ իսկական ամառային ճամբարներ գործեցին:



Այս տարվա ընթացքում շրջանի պիոներները 20 տոննայից ավելի մետաղի ջարդոն և նույնքան էլ թղթի թափոն են հանձնել: Այդ և գործող աշակերտական արտադրական 90 բրիգադների աշխատանքից ստացած եկամտի զգալի մասը պիոներները փոխանցել են «Համերաշխություն» օպերացիայի հաշվին:



վրա, վեր խոյացավ լեգենդար Գայի հուշարձանը:

Սովետական շրջանի հեռանկարները ավելի խոստումնալից են 10-րդ հնգամյակում:

Արմատական վերակառուցման կենթարկվի շրջանի Քանաքեռ թաղամասը, որտեղ պետք է ապրի 50—60 հազար մարդ: Ճարտարապետները վճռել են չփոփոխել Քանաքեռի արտաքին տեսքը, պահպանել նրա գեղեցիկ քարաշեն առանձնատները, և կառուցումները կատարել հիմնականում ազատ տարածությունների վրա: Կանցնի ևս մի քանի տարի, և Նոր-Նորքի բնակելի մի զանգված կփռվի Ավան թաղամասում: Այստեղ կառուցապատումը տարվում է նոր սկզբունքով: «Երևաննախագիծ» ինստիտուտի ճարտարապետները, օգտագործելով Երևան քաղաքի և երկրի մյուս խոշոր կենտրոնների կառուցապատման հարուստ փորձը, նախագծել և իրականացնում են բազմահարկ, կենցաղային բոլոր հարմարություններով ապահովված բնակելի առանձին թաղամասեր, որոնք կրելու են հայ դասական գրողների անունները: 1976 թվականին այստեղ շահագործման հանձնվեց Իսահակյան թաղամասը: Շինարարական տախտակամածների մեջ են գտնվում Հովհաննես Թումանյան և Նահապետ Քուչակ թաղամասերը: Ավանում 1976 թ. կառուցվեց հանրապետությունում առաջին ամենամեծ դպրոցական շենքը՝ 1700 աշակերտի համար: Կառուցման ընթացքի մեջ են նոր դպրոցական շենքեր, առևտրական օբյեկտներ, կենցաղային սպասարկման տներ և այլն: Կանցնի ընդամենը մի տասնամյակ, և Ավանում կապրի 120—130 հազար մարդ:

Երևան քաղաքի զարգացման նոր հնգամյա պլանով ժողովրդատնտեսական ծավալուն կառույցներ են նախատեսվում իրականացնել Սովետական շրջանում: Սկսված են շինարարական աշխատանքները, և այս հնգամյակում կգործարկվեն ավտոբեռնիչների գործարանը՝ 8 հազար ավտոբեռնիչների արտադրությամբ և այլ ձեռնարկություններ: Նախագծվում են 8—10 արդյունաբերական ձեռնարկություններ, որ կառուցվելու են Ջրվեժի արդյունաբերական հանգույցում:

Յուրաքանչյուր տարի շրջանում շահագործման է հանձնվում 160—180 հազար քառ. մ բնակելի տարածություն, կամ տարեկան նոր բնակարաններ են ստանում 4 հազար ընտանիք: Միայն 1976 թ. Ափանի Ավետիք Իսահակյան թաղամասում նոր բնակարաններ ստացան 1200 ընտանիք: Շրջանում արդյունաբերության զարգացման, բնակարանաշինության բուռն աճի հետ շահագործման են հանձնվում սպորտային և մշակույթի նոր օջախներ: Կառուցվում են սպորտային խաղերի հրապա-





րակ, լողավազան, շրջանային սպորտդպրոց:

Շրջանի աշխատավորները մեծ եռանդով ձեռնամուխ են եղել Հոկտեմբերյան մեծ հեղափոխության 60-ամյակի տոնակատարության նախապատրաստությանը: Շրջանի յուրաքանչյուր աշխատավոր, յուրաքանչյուր կոլեկտիվ ամեն ինչ անում է արժանավայել գործերով նշանավորելու մեծ հոբելյանը, հայրենիքին տալու ավելի շատ, ավելի բարձրորակ սարքավորումներ, գործվածքեղեն, մեքենաներ և այլն:

Օրեցօր փոխվում է շրջանի դեմքը: Բացվում են նոր լայնանիստ պողոտաներ, դրվում են հուշարձաններ, կանաչ տեսք է ստանում շրջանը: Ասես մայրաքաղաքի նոր շրջանում կառուցվում և հասակ է առնում մի նոր Երևան:

# ԴԺՎԱՐԸ ՆՐԱՆՑ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆՆ ՍՏԱՆԱԼՆ ԷՐ

*Ծույլերը գիտեին դասարանի գերազանցիկներին, գերազանցիկներն էլ՝ վատ սովորողներին: Բայց դրանից բան չէր փոխվում: Եվ համարում էին, թե ջոկատում ամեն ինչ կարգին է: Լավ սովորողները կամ հերթական «հինգ» ստացողները բարձրաձայն չէին ծաղրում հերթական «վատ» ստացողներին, միայն աշխատում էին քիչ առնչվել նրանց, որովհետև հաճախ խոսակցությունները տհաճ ավարտ էին ունենում:*

*Եվ այսպես, անջրպետը գնալով մեծանում էր: Այսօր այդ նույն երեխաները դժվարանում են ասել, թե ուր կհասցնեին նման հարաբերությունները, եթե ջոկատի ու դրուժինայի հավաքների ժամանակ չխոսվեր 5-րդ Գ դասարանի ետ մնալու մասին: Ահա այդ ժամանակ էր, որ գերազանցիկները վատ սովորողների հետ իրենց հարաբերությունը «շտկելու» առաջին քայլերն արին: Ինչպես և սպասում էին նրանք, ծույլերն ու ետ մնացողները սկզբում քմծիծաղեցին. «Հոգատարություն են ցուցաբերում, իսկ մենք դրա կարիքը չունենք»: Աշոտն այժմ ծիծաղելով պատմում է այդ ամենը, որովհետև երկու տարի է անցել, շատ բան է փոխվել դասարանի կյանքում. նրանք, ովքեր մի ժամանակ չէին հասցնում, կամ պարզապես չէին ուզում սովորել, արդեն շտկել են իրենց, լուրջ հանձնարարություններ են կատարում և դարձել են ակտիվ պիոներներ:*

*Հիմա գնացեք Երևանի № 139 դպրոց և հարցրեք 7-րդ Գ դասարանի մասին: Այդ դասարանի մասին նորից խոսում են դրուժինայի ու ջոկատի հավաքներում, բայց արդեն որպես օրինակելի, առաջավոր, իր խոստումը կատարող ջոկատի, որի առաջադիմությունը երկրորդ քառորդից հարյուր տոկոսի էր հասել: Լարիսա Աբրահամյանն ու Նաիրա Սարգսյանը պատմում են, որ իրենց համար դժվար չէր ետ մնացողներին օգնելը: Դժվարը նրանց համաձայնությունն ստանալն էր: Շատերը լսել չէին ուզում օգնության մասին, իսկ Ավետիքն ու Հրայրը անսքող արհամարհանքով էին վերաբերվում այդպիսի առաջարկություններին: Նրանք գործն սկսեցին շատ փոքրից. դասամիջոցներին, դասերի սկզբին ետ մնացողներին բացատրում էին հաջորդ դասը: Իհարկե, դա շատ բան չէր կարող տալ, բայց ուրախ էին, որ ետ մնացողները գոնե պատկերացում ունեն դասի մասին: Երբ արդեն «սառույցը շարժվել էր», ամեն վատ սովորողի կցեցին լավ սովորողներ:*

*Շատ էին օգնում նաև ուսուցիչները: Օրինակ՝ ընկեր Հարությունյանը ամեն օր ստուգում էր, թե ով է լավ կատարել իր պարտականությունը, ով է առաջադիմում: Այսպես աստիճանաբար պակասում էր վատ սովորողների թիվը:*

*Նրանք նկատելի առաջադիմում էին, բայց հարյուր տոկոս առաջադիմությունը դեռ հեռու էր: Սկսեցին ջոկատում փոքրիկ խաղ-մրցություններ անցկացնել: Ասենք, մի շաբաթ դասարանով մրցում էին գրագետ ու մաքուր հայերեն խոսելու համար, մյուսը՝ աշխարհագրության շաբաթ էին հայտարարում և այդ պահերին այդ առարկայի վերաբերյալ հարցեր էին տալիս միմյանց: Հաջորդ շաբաթը մաթեմատիկային էին նվիրում և այսպես շարունակ: Միջոցառումը բոլորին գրավում ու շահագրգռում էր: Երրորդ քառորդում արդեն ամբողջ դասարանով բաժանվել էին երեք խմբի և մրցում էին մաթեմատիկայից, անգլերենից և հայոց լեզվից:*

*Այս բոլորի արդյունքը եղավ այն, որ 7-րդ Գ դասարանը հարյուր տոկոս առաջադիմությամբ փակեց անցած ուսումնական տարին:*

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԱՄԵՆԱԵՐԻՏԱՍԱՐԴ ԴՊՐՈՑԸ



Լուսանկարները՝ ԿԱՐԵՆ ԱՎԵՏՅԱՆԻ

Ավանի նորակառույց թաղամասերից մեկի կենտրոնում, բլրի վրա միջնաբերդի նման բարձրացել է № 170 դպրոցի շենքը: Կառուցված է այն ժամանակակից դպրոցաշինության վերջին խոսքով և ունի մի ընդհանուր օղնաշարի վրա գտնվող յոթ մասնաշենքեր: Դասավանդումը կաբինետային սիստեմով է, մասնաշենքերից յուրաքանչյուրը հատկացված է մեկ հարակից առարկայի և նմանվում է որոշակի թեքումով փոքրիկ դպրոցի:

## ՆԱՄԱԿՆԵՐ

Երևանի № 87 դպրոցի 6-րդ Ա դասարանի աշակերտ Լևոն Համբարձումյանի մայրը հիվանդացավ և հիվանդանոց տեղափոխեցին: Վիրահատությունը սովորական չէր և ապաքինումը երկար էր տևելու: Իսկ տանը չկար մեկը, որ խնամեր Լևոնին: Ջոկատի անդամները, իմանալով այդ, այցելեցին իրենց ընկերոջը, աշխատեցին հուսադրել նրան: Բայց միայն դրանով ո՛չ դասընկերոջ, ո՛չ էլ նրա մոր վիճակը չէր թեթևանա:

Պիոներները վճռեցին Լևոնին մենակ չթողնել և այդ մասին նամակով հայտնեցին մորը, որ նա չանհանգստանա: Նաև նամակ գրեցին վիրահատող բժշկին, խնդրելով նրան հոգատար լինել իրենց դասընկերոջ մոր նկատմամբ և շուտ առողջացնել նրան: Վիրահատող բժիշկը՝ Սերգեյ Նանյանը նրանց նամակն ստացավ և շտապեց պատասխանը. «Մենք ամեն ինչ անում ենք, որ Լևոնի մայրիկը շուտ ապաքինվի: Դուք էլ աշխատեք, որ Լևոնը դասերից ետ չմնա, ու երբ մայրը գա, գոհ մնա որդուց և ձեզանից»:

Ջոկատի վրա մեծ տպավորություն գործեց Լևոնի մոր նամակը. «Մեր պալատում հանրապետության տարբեր վայրերից եկած կանայք կան և բոլորս էլ հուզվել էինք, առանց արցունքների չէինք կարողանում ընթերցել ձեր գրած ջերմ տողերը: Ահա այդ ժամանակ էր, որ մեր պալատը մտավ բժիշկը: Մենք չգիտեինք, որ նա էլ է նամակ ստացել և կարծում էինք, թե այլ առիթով է հուզված: Սակայն նա ցույց տվեց ջոկատի անունից գրած նամակը և մենք ավելի հուզվեցինք:

Իմ լավ բալիկներ, ձեր նամակներից ու այդքան լավ վերաբերմունքից ես ինձ շատ լավ եմ զգում և ավելի արագ եմ կազդուրվում, շնորհակալ եմ, համբուրում եմ բոլորին, իմ Լևոնի լավ ընկերներ»:

## ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՀԱՆԴԻՊՈՒՄ



Երևանի № 133 դպրոցի վեցերորդ Ա դասարանցիները ծրագրել էին անվանի մանկագիր Վախթանգ Անանյանի «Որսորդական պատմվածքների» ժողովածուն իր ներկայությամբ քննարկել: Հանդիպմանն արդեն պատրաստ էին, երբ պարզվեց, որ հեղինակը տկար է և գալ չի կարող: Նրանք իրենք այցելեցին անվանի գրողին և նրա հետ քննարկեցին ժողովածուն:

Աշակերտները խոսեցին իրենց վրա առավել տպավորություն գործած պատմվածքների, դրվագների, որսորդների խիզախ ու համարձակ արարքների մասին: Մեծ գրողը ուշադրությամբ լսում էր պիոներներին, խրախուսում նրանց, պահանջում ավելի համարձակ խոսել չհավանած պատմվածքների մասին և առանց վերապահության քննադատել:

Անմոռանալի հանդիպում էր դա վեցերորդ դասարանցիների համար: Հանդիպման վերջում սիրելի գրողը եղելություններ պատմեց որսորդների կյանքից, օգտակար խորհուրդներ տվեց նրանց բուսական ու կենդանական աշխարհը պահպանելու, հայրենի բնության նկատմամբ առավել ուշադիր լինելու մասին:

# ԶԱՐՄԱՆԱԼԻ ԱՆՏԵՂՅԱԿՈՒԹՅՈՒՆ

Նրանք բարեկամական կապեր ունեն Սովետական Միության ու Հայաստանի խոշորագույն կառույցների շինարարների և տարբեր քաղաքների իրենց հասակակից դպրոցականների հետ: Նման բարեկամություն են հաստատել նաև Թեհրանի հայկական դպրոցներից մեկի աշակերտների հետ և գրքեր, բացիկներ, զանազան հուշանվերներ են ուղարկում միմյանց: Բարեկամությունը օգնում է նրանց ավելի լավ ճանաչել իրար:

Պատահեց այնպես, որ թեհրանցի այս հասակակից-բարեկամներից երկուսը այս տարի այցելեցին Երևան: Վեցերորդցիները ամեն ինչ արել էին թեհրանցի բարեկամներին շուքով դիմավորելու համար: Հասակակիցները անչափ ուրախ էին հանդիպման համար և նրանց միջև ծայր առավ ջերմ ու անկեղծ զրույց: Երևանցիները թեհրանցիներին պատմում էին իրենց դպրոցի, դասերի, պիոներական կյանքի և իրենց հուզող շատ ու շատ հարցերի մասին: Իսկ այդ ժամանակ էր, որ թեհրանցիները մեկ էլ դարձան ու կշտամբեցին երևանցիներին, թե դուք լուրջ ուշադրություն չեք դարձնում եկեղեցիների, բերդերի, տաճարների և պատմական մյուս հուշարձանների պահպանմանը: Երևանցիները զարմացան նրանց անտեղյակության վրա: Հաջորդ օրվանից հյուրերին տարան Գառնի, Գեղարդ, Սևան, Էջմիածին և այլ պատմական ու տեսարժան վայրեր:

Զարմանալու հերթն արդեն հյուրերինն էր, պատմում է դրուժինայի խորհրդի նախագահ Ժիրայր Դարպասյանը: Գառնիի դիմաց կանգնած, նրանք շշնջում էին բառերն ու դժվարանում հավատալ, որ դարեր առաջ երկրաշարժից ավերված տաճարը վերջին մի քանի տարում է վերականգնվել, հառնել իր առաջվա տեսքով:

Այդ շրջագայությունների ընթացքում հյուրերը շատ տեղեկություններ քաղեցին իրենց մյուս հայրենիքի՝ Սովետական Հայաստանի մասին, ծանոթացան նրա հսկա առաջընթացին, և վեցերորդցիներին հրաժեշտ տվեցին հայրենիք վերադառնալու, Հայաստանում բնակվելու բուռն բաղձանքը սրտներում:

Ս. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ



*Թևավոր խոսքեր*

## ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ԵՂՋՅՈՒՐ



Դարձյալ մի բառակապակցություն, որ մեզ կտակել է անտիկ աշխարհը: Աստվածների հայր Զևսը ծնվելուն պես թաքցվում է մի քարայրում, ուր նրան իր կաթով կերակրում է սրբազան Ամալֆեոս այծը: Եվ դա իզուր չէր. Զևսի հայրը՝ տիտան Քրոնոսը, ուզում էր ոչնչացնել իր զավակին ու ժառանգին, խժռել նրան, ինչպես իր մյուս զավակներին էր խժռել:

Երախտագետ Զևսը, գլխավոր աստված դառնալուց հետո, Ամալֆեոսին երկինք է տանում, իսկ իր դաստիարակչուհիներին՝ հավերժահարսերին, նվիրում է այծի եղջյուրներից մեկը. այդ եղջյուրից թափվում էր ու հոսում այն ամենը, ինչ որ պահանջում էին հավերժահարսերը:

Ահա հենց այս եղջյուրը, որ դարձել էր անսպառ գանձերի աղբյուր, կոչվեց առատության եղջյուր: «Ինչպես առատության եղջյուրից» արտահայտությունը նշանակում է արտակարգ առատությամբ, մեծ քանակությամբ:

## ՌՈՒԲԻԿՈՆԸ ԱՆՑՆԵԼ

Հռոմեական հռչակավոր զորավար Գայոս Հուլիոս Կեսարը, հարևան գաղիացիներին հպատակեցնելուց և մի շարք փայլուն հաղթանակներ տանելուց հետո, վճռում է ձեռքն առնել Հռոմի գերագույն իշխանությունը: Սենատն արգելում է նրան անցնել Իտալիայի և Գաղիայի միջև ընկած սահմանը: Նա խախտում է այդ արգելքը և, բացականչելով՝ «Վիճակը նետված է», անցնում է սահմանի Ռուբիկոն գետը (լատիներեն «Կարմիր գետ»): Սկսվում է քաղաքացիական պատերազմ, որից Կեսարը հաղթող է դուրս գալիս և դառնում Հռոմի դիկտատորը:

«Ռուբիկոնն անցնել» այժմ նշանակում է թույլ տալ մի արարք, որն այլևս չի կարելի փոխել, վտանգավոր և վերջնական վճիռ կայացնել:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆԻ*

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



# ՄԻՆՉ ԱՐԵՎԱՄՈՒՏ

ՄԱՔՍԻՄ ՍԻԿԱՆՅԱՆ

Արևի խարույկը մարեց լեռներում,
Ու մութը անհոտ ծխի պես իջավ,
Իջավ պարուրեց քաղաք, դաշտ ու գյուղ...
Կարճնագույն լույսը ժպտաց տներում,
Հետո տները նավերի նման
Լույսի առագաստ պատուհաններով
Լողացին թեթև գիշերվա խորքում...
Ի՜նչ տարօրինակ ծուխ է այս մութը,
Քամին վազո՜ւմ է, վազո՜ւմ նրա մեջ,
Սակայն ցրիվ տալ չի կարողանում...
Եվ տները լուռ
Պատուհանների առագաստներով
Լողում են թեթև գիշերվա խորքում,
Մինչ խարիսխ գցեն,
Մինչ խարիսխ գցեն լույսի հատակում...

# ՀՈՒՇԱՐՁԱՆ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Մեր գյուղում կա մի հուշարձան՝
Մի զինվոր է թիկնեղ, ջահել,
Ձեռքին պահել է հրացան,
Հայացքը լուռ՝ հողին հառել:

Կանգնած է նա գյուղամիջում,
Ուր խմբվում են գյուղի մարդիկ,
Հազար բանից խոսում-վիճում,
Իսկ նա լսում է ուշադիր:

Լսում է նա լուռ կարոտով,
Հայացքն անթարթ՝ մեր հանդերին,
Ո՛չ հագենում է լսածով,
Ո՛չ տեսածով իր աչքերի:

Զինվորի դեմ կա մի աղբյուր,
Աչքը՝ նրա ակունքին միշտ,
Ես չեմ խմել այդպիսի ջուր՝
Այդքան պաղ ու այդքան վճիտ:

# Բացատրագիր

ԿԱՐՅՈՒՆ ԿԱՆԳՈՒՆԻ

*Հեշտ է ասել՝ բացատրագիր գրիր: Իսկ փորձիր հապա գրե՛լ: Սեղանիս՝ իմ առաջ դրված են թանաքամանն և քառակուսի տետրակ: Ես էլ ահա գրում եմ այդ բացատրագիրը: Ճանճը բզզալով պտտվում էր թանաքամանի վերևը, բայց դա գործին չի վերաբերում:*

*Պետք է սկզբից հերթով պատմել ամեն ինչ: Իսկ ի՞նչ պատմել: Ամեն ինչ պարզ է: Բայց ուսուցչուհին կարգադրեց, երբ դասից մի լավ ուշացա: Ուրեմն այսպես, ինչո՞ւ ուշացա: Պարզ է: Ուշացա, որովհետև չգիտեի, թե ինչքան կտևի ճանապարհը, և նման բաներ... Մի խոսքով՝ նախապես հաշվել չկարողացա: Մի՞թե հասկանալի չէ: Ես ուսուցչուհուն այդպես էլ ասացի:*

*Բայց նա պատասխանեց, թե ոչ մի ողջամիտ մարդ չի կարող իմ պատմածից գլուխ հանել: Սակայն, ես սկզբից մինչև վերջ ամբողջ պատմությունը պատմել նույնպես ոչ մի ողջամիտ մարդ չի կարող: Ես հենց այդպես էլ ասացի: Իսկ ուսուցչուհին պատասխանեց, թե բանավոր չես կարող պատասխանել, ուրեմն՝ գրի՛ր: Բացատրագիր գրիր, թե ինչու ես ուշացել:*

*Ամբողջ հարցն այն է, որ մենք նոր տուն ենք տեղափոխվել: Բայց ես այդ պատճառով չէ, որ ուշացել եմ: Ավելի վաղ ենք տեղափոխվել, մի քանի օր առաջ: Հենց որ տունը պատրաստ եղավ, մենք իսկույն եկանք ու բնակվեցինք: Ուրիշներն էլ եկան ու բնակվեցին:*

*Մեր տունը շատ մեծ է, դուրս է գալիս երեք փողոցի վրա: Իսկ առհասարակ նոր տուն տեղափոխվելը հրաշալի է: Չորս կողմը խառնաշփոթ է: Երանի մարդ ամբողջ կյանքում տեղափոխվի, ու՛ թե կյանք ճաշի բան կլինի: Շարունակ ինչ-որ բան է կորչում, հետո գտնում են: Իսկ առհասարակ, եթե լավ մտածես, այդ տեղափոխությունների մեջ ոչ մի վատ բան չկա:*

*Հենց հաջորդ առավոտյան ինձ համար անախորժություններ սկսվեցին: Բանն այն է, որ ես թերթերը նոր դեռ չգիտեի: Սանդուղքի թերթերը: Եվ հետո որտեղի՞ց պիտի իմանայի, եթե բակիկը դեռ չէի*

փորձել: Առավոտյան, երբ դպրոց էի ուղևորվում, հենց հեծա բազրիքին, իսկույն թափով գլորվեցի ներքև և ցած գցեցի մի քեռու, որը մուտքի էլեկտրաանջատիչն էր նորոգում: Ես չգիտեի, չէ՞, որ այնպես թափով էի սահում:

— Ա՛յ քեզ բան,— ասաց քեռին և սկսեց մթության մեջ որոնել պտուտակահանը:— Ես կուզենայի քո հոր հետ մի քիչ զրուցել: Անունդ ի՞նչ է:

— Պետյա,— ասացի ես և շտապով փախա:

Իսկ երկու հարկ ներքև, զվարճանալու համար պայուսակս պատի երկայնքով քարշ տվեցի: Հանկարծ ինչ-որ բան զնգաց, թիթեղե բիդոն էր:

— Ես կուզենայի քո մայրիկի հետ զրուցել,— ասաց մորաքույրը:— Կարծեմ վերևում ես ապրում: Անունդ ի՞նչ է:

— Պետյա,— պատասխանեցի:

Դե, բանս պրծած է, վճռեցի ես, պայուսակս թևիս տակ առա և ձեռքերս գրպաններս խոթեցի, որպեսզի նոր հիմարություններ չանեմ: Պարզվեց, որ գրպանումս մի կտոր կավիճ կա...

Հազիվ էի հասցրել պատի վրա գրել ՅՈՒՐԿԱ ՀԻ... մեկ էլ հիշեցի, որ Յուրկան այս տանը չի էլ ապրում: Այդ ժամանակ եկավ դռնապանուհին: Ստիպված եղա նրան էլ ասել անունս:

Դպրոցից դանդաղ, շատ դանդաղ տուն վերադարձա, շտապելու առանձին ցանկություն չկար: Զանգը տալուց առաջ երկար կանգ առա դռան հետևը:

— Ինչ-որ լուրջ ես այսօր: Դպրոցում անախորժություննե՞ր են եղել,— հարցրեց մայրիկը:

Ուշադիր նայեցի մայրիկին, որն այդ պահին նկար էր կախում պատից: Կարծես թե ոչ մի հատուկ բան չէր պատրաստվում ինձ հաղորդել: Բերանում մեխեր կային և քմծիծաղ էր տալիս:

Սիրտս թեթևացավ: Ըստ երևույթին, այս իրարանցման մեջ ամեն ինչ մոռացել էին:

Հետո դուրս եկա բակ զբոսնելու: Ինչքա՞ն տղաներ ու աղջիկներ կային այնտեղ: Եվ համարյա բոլորը՝ անծանոթ: Բոլորի անունները միանգամից հիշել չէի կարող, բայց մի քանի տղաների հետ անմիջապես բարեկամացա: Իմացա, որ Թումասենց տանը հին գրամոֆոնի փող կա, որ Անասը կարողանում է ականջները շարժել (ամեն մի ականջն առանձին), որ Կերասին իսկական նեգր է տեսել... Իմացա նաև, որ Ռեյնը հրաշալի պարսատիկ ունի, բայց դուրս բերել չի կարող, որովհետև այստեղ չորս բոլորը լուսամուտներ են: Դա Ռեյնին կաշկանդել էր, թե չէ՝ ցույց կտար իր վարպետությունը:

Այնտեղ մի տղա էլ էր կանգնած, մոտավորապես իմ հասակի, սարսափելի լուրջ: Իսկույն նկատեցի նրան: Թվում էր, թե նա հիմա մի ոտանավոր կասի, որն ինքն է գրել: Նա ինձ դուր եկավ, և ուզեցի հետը խոսել: Բայց ինձ նույնիսկ չնայեց: Հավանորեն չլսեց էլ, թե ինչ ասացի: Նա շատ մռայլ էր ու ցրված: Հոնքերը կիտած շարունակ մտածում ու մտածում էր: Հետո դանդաղորեն գնաց դեպի մեր մուտքը: Ահա, դուրս է գալիս, որ մենք նույն մուտքի բնակիչներ ենք:

Ա՛յ թե մռայլ տղա է:

Մեկ էլ բակ դուրս եկավ նրա մայրիկը և սկսեց զրուցել իմ մայրիկի հետ: Անմիջապես ծլկեցի, բայց այնուամենայնիվ լսեցի, թե ինչպես այն տղայի մայրիկը վշտացած պատմում էր.

— Տղայիս ճանաչել չի լինում: Շրջապատից ամաչում եմ: Այնպիսի խայտառակ բաներ է անում: Ինչպե՞ս այդքան անկարգ դարձավ: Չգիտեմ ինչպես վարվեմ հետը:

Ահա, ես հասկացա, որ այդ մռայլ տղան խուլիգան է:



Երեկոյան փորձեցի շքամուտքի դռնից կախված ճոճվել, բայց դուռը շատ մեծ թափ առավ: Այդ դռանը վարժված չէր... Դրա համար: Այն քեռին, որ կանգ էր առել կոշիկների կապերը ամրացնելու, նույնպես մեծ թափ առավ: Դե, իհարկե, ստիպված էի նրան էլ ասել իմ անունը: Նա էլ խոստացավ անպայման խոսել հորս հետ:

Անձամբ ես կարծում եմ, որ խոսելու բան չկա, սակայն, համենայն դեպս, անմիջապես տուն չգնացի: Ինչքա՞ն կարելի էր ձգձգել գնալս: Բայց ճար չկար. վախով բաց արի դուռը: Ծնողներս ոչ մի ուշադրության չարժանացրին ինձ: Իսկ ես կարծում էի, թե կոշկակապերով քեռին արդեն հասցրել է մեր տուն գալ...

Հաջորդ օրը, երբ ստուգում էի կանգերը, այն

կանգերը, որ շքամուտքում են, սարսափելի իրարանցում առաջացավ: Բայց չէ՞ որ մեկնումեկն այդ կանգերը պիտի առուգեր: Ենթադրենք՝ գիշերվա ժամերով գալիս է մեկի ազգականը և փորն էլ ցավում է: Ահա կանգնած է դռան մոտ, իսկ դուռը փակ է: Զանգն էլ չի գործում: Խեղճն ի՞նչ անի:

Վերջիվերջո որևէ մեկը պետք է առուգեր, թե բոլո՞ր կանգերն են անխափան գործում: Վստահ լինելու համար երկրորդ անգամ շարքով առուգեցի, հետո մի անգամ էլ...

Մուտքում այնպիսի մի աղմուկ-աղաղակ բարձրացավ, որ ես ինձ կորցրի և շտապով սողոսկեցի ներքնահարկը, որտեղ լվացքատունն էր: Սանդուղքների վրա խսկական խառնաշփոթություն էր: Ես լսեցի, թե ինչպես դռնապանուհին ասաց.

— Քիչ առաջ Պետյան էր այստեղ թրև գալիս: Հավանորեն նրա գործերն են: Այդ տղան ուղղակի պատուհաս է...

Օջախի վրա երկու մեծ կաթսա էր ամրացված: Կյանքումս այդպիսի ահագին կաթսաներ չէի տեսել: Մոտեցա դրանց: Հանկարծ որտեղից որտեղ հիշեցի հայրիկի գրքերից մեկի մի նկարը. երկարապոչ սատանան եղանը ձեռքին կանգնած է կաթսայի մոտ, իսկ կաթսայի մեջ մի ցիլինդրով մարդ է նստած:

Այդ հիմար միտքը ո՞նց որ ինձ մորակեց, ես մտա կաթսան: Ա՜յ քեզ հրաշք. տեղավորվեցի, դեռ մի քիչ էլ տեղ մնաց:

Նստեցի կաթսայի մեջ և կկվարձության համար կափարիչը վրան քաշեցի: Էնքան լավ էր, որ նույնիսկ հոհռացի: Ձայնս կաթսայի մեջ թնդում էր: Սկսեցի պանապան բաներ մտածել և բոլորովին մոռացա, որ նստել եմ կափարիչով ծածկված կաթսայի մեջ:

Անես երազում լսեցի, թե ինչպես մեկը ցեմենտե հատակին նետեց մի կապոց վառելափայտ և շատ հեռվից ասաց.

— Դու առայժմ կրակը թեժացրու...

Ես վախեցա, կափարիչը դղրդյունով դեն նետեցի և կաթսայից դուրս թռա: Այնպիսի մի խուճապ առաջացավ, պարզապես սարսափելի:

— Այսօր Պետյայը մի լավ քոթակի է արժանի,— ասաց մեկը: Դրա համար էլ ես շատ զարմացա, երբ երեկոյան ամեն ինչ բարեհաջող անցավ: Երբ հայրիկը աշխատանքից վերադարձավ, հարցրեց.

— Հը՛, Պետ՛յա, նոր տանը քեզ ինչպե՞ս ես պահում:

— Ոչինչ,— քրթմնջացի և սպասեցի, թե հետո ինչ է լինելու:— Դեռ լրիվ չեմ վարժվել,— համեստաբար դեպս նախապես արդարացա:

Մայրիկը ոչինչ չասաց, այլ միայն սեռուն հայացքով նայեց ինձ: Իսկ հայրիկը պատասխանեց.

— Դե, տե՛ս, հա՛, զգուշացի՛ր:

Առանց այն էլ շատ զգույշ էի: Բայց ի՞նչ օգուտ: Հետագա խռսակցություններից խուսափելու համար սենյակից դուրս սահեցի:

Մի հարկ ներքևի հարթակում կանգնած էր մի օտար տղան և լուսամուտից դուրս էր նայում: Նա թխպոտ ամպի էր նման և ասես ինչ-որ շատ կարևոր հարց էր լուծում: Միանգամից հարցեցի նրան.

— Ի՞նչ ես տեսել այնտեղ,— հարցրի:

Նա նայեց ինձ, բայց ոչինչ չպատասխանեց: Թվաց, թե չի էլ լսում ինձ: Շատ խորն էր թաղված իր մտքերի մեջ: Ո՞նց որ մի ցրված պրոֆեսոր... Անպայման մի հերթական հիմարություն է արել, մտածեցի:

Իսկ երեկոյան ահա թե ինչ պատահեց: Մուտքի մոտ ջեռուցիչի վրա փայտիկով «Պիոներների մարշն» էի թխթխկացնում, հենց այդ ժամանակ երևացին երկու փոքրիկ աղջիկ և հարցրին, թե ե՞ս եմ, արդյոք, Պետյայը: Ես անմիջապես չպատասխանեցի, բայց հետո այնուամենայնիվ խոստովանեցի, թե՝ այո՛, ես Պետյան եմ: Ախր շատ քաղաքավարի հարցրին: Այդ ժամանակ պատմեցին, թե ինչ գործով են եկել: Նրանք, իբր, լսել են, որ ես աշխարհագրությունից հուժեղ եմ, և ահա որոշել են ինձանից օգնություն խնդրել: Ինչ-որ բան դասի մեջ իրենց համար անհասկանալի է:

Ես, անշուշտ, իսկույն գլխի ընկա, որ նրանք ավելի շատ հետաքրքրությունից են եկել, բայց քանի որ ինձ այնքան էլ հաճախ չեն գովում, ինքնասիրությունս շոյվեց: Ծանրակշիռ երևալու համար հազացի և, համեստորեն հայացքս իջեցնելով, շշնջացի.

— Այնքան էլ ուժեղ չեմ... Բայց ընդհանրապես որոշ բան...— Եվ էլի ինչ-որ դատարկ բան դուրս տըրվեցի: Նրանք թույլ չտվեցին մի խոսք անգամ ասել: Կպան՝ օգնիր, հա օգնիր, բարի եղիր: Ես խոստովանեցի, որ այնքան էլ բան չեմ հասկանում այդ գետերից ու լճերից, բայց նրանք ծաղրեցին ու ասացին, թե բոլոր խելոք տղաները սաստիկ համեստ են:

Դա ինձ բոլորովին շփոթեցրեց: Դե, էլ ի՞նչ կարող էի անել: Այնպե՞ս էի շշմել: Եվ ստիպված եղա նրանց բոլոր հարցերին պատասխանել: Ամեն ինչ այնպիսի մի թափով էր տեղի ունենում, որ ես ոչ մի հարցի մասին կարգին մտածել իսկ չէի կարողանում:

Ինչ որ ընչսասպառ հորինում էի, նրանք գրում էին: Աֆրիկայի ամենամեծ գետը իմ ասածով ստացվեց Նեգուսը, հետո Ավստրիան շփոթեցի Ավստրալիայի հետ, Շվեդիան՝ Շվեյցարիայի հետ, իսկ Խաղաղ օվկիանոսում հայտնաբերեցի ինչ-որ Միկրոսկոպյան կղզիներ...

Երբ աղջիկներն սկսեցին ինձ շնորհակալություն հայտնել, ամոթից քիչ մնաց գետինը մտնեմ: Իսկ երբ գնացին, ափսոսեցի, որ առհասարակ կաթսայից դուրս եմ եկել...

Մյուս օրը, երբ ահը սրտումս բնակարանից դուրս եկա, հանդիպեցի դռնապանուհուն և մի անծանոթ

մորաքրոջ: Դռնապանուհին տարակուսանքով ասաց.

— Ահա նա՝ մեր Պեեպը, բայց...— նա թերահավատությամբ գլուխն օրորեց և առհասարակ շատ շըփոթված տեսք ուներ:

Իսկ մյուս մորաքույրը ուսիս թփթփացրեց և քընքշությամբ ասաց.

— Կեցցե՛ս, Պեե՛պ... Միշտ այդպես վարվիր: Փոքրիկներին պետք է պաշտպանել: Ինձ պատմեցին, թե ինչ է տեղի ունեցել ավազի արկղի մոտ: Կեցցե՛ս...

Այդպես էլ բերանս բաց մնացի կանգնած, իսկ երբ վերջապես փակեցի, երկուսն էլ արդեն չկային: Ի՞նչ ավազի արկղ: Ո՞վ... Ի՞նչ... Որտե՞ղ...

Ես ուզում էի կարգին մտածել այդ հարցերի մասին և սողոսկեցի ներքնահարկը: Նստեցի տախտակների կույտի վրա և գլուխս ձեռքիս հենած՝ մտքերի մեջ ընկա: Ներքնահարկում խաղաղ էր ու կիսախավար, երանություն: Երկար նստեցի այնտեղ, բայց ոչ մի մտքի չհանգեցի: Արդեն վեր էի կենում, որ գնամ ստուգեմ, իսկապես հրդեհաշեջ սանդուղքը ձեղնահա՞րկ է տանում, և զգացի, որ տախտակները ճռճռացին: Պարզվեց, որ մյուս ծայրին նստած է այն մռայլ տղան: Անմիջապես չնկատեցի նրան:

— Ինչի՞ մասին էիր մտածում այդտեղ,— հարցրեց:

— Մտածես, չմտածես, օգուտ չկա,— ասացի:— Անհասկանալի բաներ են կատարվում ինձ հետ:

— Անհասկանալի բանե՞ր,— ծաղրեց նա,— իմ տեղը որ լինեիր, ի՞նչ կանեիր:

— Էդ ինչո՞ւ ես այդպես մռայլ ման գալիս,— հարցրի:

— Որ քո հոգին էլ ամեն օր ուտեին, հետաքրքիր կլիներ նայել, թե ինչ դեմք կունենայիր,— պատասխանեց:

— Իսկ ո՞վ է ուտում:

— Ծնողներս, էլ ուրիշ ո՞վ: Առավոտից իրիկուն սղոցում են: Չեմ հասկանում, թե ինչ ճանճ է կծել նրանց:

— Ի՞նչ ես արել որ:

— Արե՜լ: Բանն էլ այն է, որ ոչինչ չեմ արել: Այդ բոլորը նրանց ենթադրություններն են:

— Չէ՛ մի, ոչինչ, երևի մի հիմար բան արա՞ծ կլինես:

— Ազնիվ խոսք, ոչինչ չեմ արել: Բանն էլ հենց այդ է: Թե չէ ամեն ինչ պարզ կլիներ: Իսկ հիմա արի ու հասկացիր...

— Լավ ես հնարում,— չհավատացի ես:

— Հասկանո՞ւմ ես, հենց որ տեղափոխվեցինք այս տունը, տհաճությունները վրաս թափվեցին: Հենց դպրոցից տուն եմ գալիս, դնքում են: Չեմ հասկանում, թե ծնողներիս ինչ է պատահել: Էնքան բծախնդիր են դարձել, որ դիմանալու ուժ չկա...

— Իսկ պատճառն ի՞նչ է:

— Ասացի, չէ՞, առանց պատճառի: Մի տես, թե ինչում են ինձ մեղադրում: Իբր թե բազրիքի վրայով սղղացել եմ և ինչ-որ մեկին դիպել ու վայր գցել, ջուր եմ տվել բիդոնները, ճոճվել եմ շքամուտքի դռնից կախված, սաստիկ վախեցրել եմ մարդկանց լվացքատանը... Բոլորը թվել հնարավոր չէ: Այս բոլորից բացի, իբր թե ինչ-որ աղջիկների աշխարհագրությունից ինչ ասես փչել եմ... Իսկ ես ոչ մի աղջկա չեմ տեսել: Իսկապես որ անհասկանալի բաներ:

Նա գլուխը հենեց ձեռքին և հայացքը հառեց մի կետի:

— Հը՞, ինչպե՞ս բացատրել այդ բոլորը,— հազիվ լսելի հարցրեց նա:— Ինչպե՞ս...

Հանկարծ գլուխս թեյնիկի նման սկսեց գվվալ: Ահա թե ի՞նչ...

— Հը՞, ի՞նչ կասես,— նորից հարցրեց տղան:

Սկզբում քիչ մնաց ծիծաղեմ, բայց ինձ զսպեցի, այնուամենայնիվ անհարմար է: Ցածր, շատ ցածր հարցրի, ձայնս դողաց.

— Անունդ ի՞նչ է:

— Պեեպ,— պատասխանեց:— Ես ձեզանից մի հարկ ներքև եմ ապրում: Իսկ քո անունն ի՞նչ է:

— Ը-ը՛, իմ անունը...

Ազնիվ խոսք, բառերը կարծես խրվել մնացել էին կոկորդումս:

— Ի՞նչ ես պոչ խաղացնում,— ասաց Պեեպը:— Չես ուզում, մի՛ ասա: Ոչ ոք քեզ չի ստիպում:

Բայց ես ասացի.

— Իմ անունն էլ է Պեեպ...

Նա զարմանքից աչքերը չռեց, մի վայրկյան մտքերի մեջ ընկավ, տախտակաշարից ցած թռավ և հայացքը հառեց ինձ այնպես, ինչպես վիշապը՝ ճագարին: Ես ինձ նույնիսկ վատ զգացի: Մեկ էլ նա սկսեց այնպես ծիծաղել: Ես էլ նրա հետ:

Այո՛, բայց ես այդպես էլ չբացատրեցի, թե ինչու դպրոցից ուշացա: Հենց սկզբից ասացի, որ ոչ մի ողջամիտ մարդ այս պատմությունը պատմել չի կարող: Առհասարակ ամբողջ պատմությունը և դեռ հետո էլ...

Մի խոսքով, այդ մյուս Պեեպի հետ բարեկամացանք: Նա հիանալի տղա է: Հո չե՞մ կարող անընդհատ նրա գլխին օյիններ խաղալ:

Եվ ահա հաշտվելու հաջորդ օրը, երբ դպրոց էի գնում, որոշեցի ամեն ինչ նոր ձևով անել: Բայց դա այնքան անսովոր էր, և հետո ես հաշվի չառա, որ այդքան շատ ժամանակ կգնա: Մի խոսքով, մինչև վերջ չմտածեցի: Էլ ի՞նչ բացատրեմ, առանց այն էլ ամեն ինչ պարզ է:

Մի խոսքով, առավոտը մեր բնակարանից դուրս թռա, հո՛պ, հեծա բազրիքին և երկու հարկ սահեցի... բայց անմիջապես ուշքի եկա. չէ, այսպես չի կարելի:

Նորից կրկնում ես հինը, որ քո փոխարեն ուրիշների՞ն հասնի: Ես քարշ եկա վերև, որ ամեն ինչ նո-

րից սկսեմ: Ներս մտա մեր բնակարանը և ուզում էի դուրս գալ բոլոր մարդկանց նման, բայց այդ ժամանակ մայրիկը հարցրեց.

— Ի՞նչ է, բան ես մոռացե՞լ:

Վերցրի ֆուտբոլի գնդակը,— հարկավո՞ր էր մի կերպ դուրս պրծնել,— և իբրև պատասխան՝ անորոշ փնթփնթացի: Այդ գնդակն ինձ բոլորովին պետք չէր:

Սանդուղքն իջա բոլոր կարգին մարդկանց նման: Դրանից այնքան ուրախացա, որ ներքևում, մուտքի մոտ սկսեցի սուլել:

Բայց անմիջապես հասկացա, որ նորից վրիպեցի, և շտապով դուրս թռա բակ: Փողոցում հանկարծ սիրտս կանգնած մտավ. դրսի դուռը փակեցի՞ արդյոք: Վազելով ետ եկա: Իհարկե, դուռը լայն բացված էր: Բոլոր կարգին մարդկանց նման փակեցի և ճանապարհ ընկա: Անկյունից շուռ գալով փորձեցի պատի վրա մի ուրախ կերպարանք նկարել: Բայց ձախ ականջը նկարելիս հիշեցի, որ նորից ինձ խելացի չեմ պահում: Շատ վախեցա և թաշկինակովս շնչակտուր այդ բոլորը ջնջեցի: Իսկ հետո վազեցի լվացքատուն թաշկինակս լվանալու:

Կհասցնեմ, մտածեցի, դպրոցը երկու քայլի վրա է: Մեկ էլ տեսնեմ հարևանի տան մոտ ինչ-որ մեկի պստիկը թնկթնկում է: Ուզում էի կողքից անցնել գնալ: Բայց մտածեցի, թե այն մյուս Պետյը հավանաբեն այդպես չէր վարվի: Եվ ես շինծու խիստ ձայնով պստիկին հարցրի, թե ի՞նչ է պատահել, ինչո՞ւ է լալիս:

Պարզվեց, որ նրա խաղալիք մեքենան ընկել է լուսամուտի տակի վանդակորմից ներս: Գետին նետեցի պայուսակս և գնդակը, քանոնին պարան կապեցի, իսկ պարանի ծայրին ամրացրի մետաղալարի մի կեռիկ: Այդ մետաղալարն արդեն մի քանի օր էր, որ քարշ էի տալիս գրպանումս և չգիտեի, թե որտեղ գործածեմ: Այսպիսով, մեքենան դուրս քաշեցի, բավական արագ գլուխ բերեցի գործը: Երբ խաղալիքը հանձնեցի փոքրիկին, դեմքն ուղղակի շողշողաց:

Ինձ էլ էր հաճելի, ուրախությունից ոտքով մի լավ հարվածեցի ֆուտբոլի գնդակին: Գնդակը խփվեց դիմացի տան պատին, իսկ այնտեղից ետ թռավ փողոցի անկյունը և գլորվեց փողոցն ի վար:

Թափը չտեսնված էր: Այդ փողոցում թատրոն է կառուցվում, և ցանկապատի երկարությամբ գնդակն այնպես էր գլորվում, որ ավելի լավ պատկերացնել չի կարելի: Արագությունը գնալով ավելանում էր, ես հետևից չէի հասնում: Այդ պահին փողոց նետվեց մի շան թուլա: Հենց նկատեց, որ գնդակն իր վրա է գալիս, պո՛չկ, փախավ:

Այդպես վազում էինք: Առջևից, պոչը թաթերի մեջ սեղմած, վազում էր բծավոր թուլան, նրա հետևից՝ գնդակը, իսկ նրանց երկուսի հետևից, պայուսակը թափ տալով, ես էի վազում:

Նրանց հասա միայն գետի մոտ, սիզամարգի վրա: Գնդակը գլորվել ընկել էր ջրափոսը, իսկ շան թուլան խոտափնջի հետևից ծուռ-ծուռ նայում էր գնդակին:

Բայց ամբողջ դժբախտությունն այն էր, որ իմ դպրոցը ճիշտ հակառակ ուղղության վրա էր գտնըվում: Նորից ճանապարհ ընկա փողոցն ի վեր, մի ձեռքումս՝ շնիկը, մյուսում՝ պայուսակն ու գնդակը:

Ես պետք է գտնեի այն տունը, ուր ապրում էր շնիկը: Եվ սկսեցի որոնել: Ո՞վ կկարծեր, թե դա այնքան ժամանակ կխլի: Ահա այդպես էլ եղավ: Ուրիշ անգամ արդեն կիմանամ, թե ինչքան ժամանակ հարկավոր կլինի: Այդ դեպքում պարզապես ավելի շուտ կսկսեմ... Որովհետև եթե մարդ որևէ բան սխալ է անում, պետք է անմիջապես ուղղի: Հետո արդեն ուշ կլինի: Դա արդեն հասկացել եմ:

Եթե գոնե միայն ինձ պատժեին: Բայց ես չե՞մ կարելի թույլ տալ, որ իմ լավ ընկերը, որին նույնպես Պետյա են կոչում, իմ պատճառով տհաճություններ ունենա: Ճիշտ չէ՞, չի կարելի:

Այդ դեպքում ես ի՞նչ ընկեր եմ:

Թարգմ. Վ. ՆՍԱՑՅԱՆԻ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ







# ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՖՐԱՆԿ՝ ՏՈԿՈՍՆԵՐՈՎ ՀԱՆԴԵՐՁ

*Ս. ԴՈՎԼԱԹՈՎ*









Փարիզի ծայրամասում, Մատյուրեն-Սեն-Ժակ կոչվող կեղտոտ փողոցի ամենավերջում վեցհարկանի մրտում մի շենք կա: Նրա ձեղնահարկի մի փոքրիկ սենյակում վարձով ապրում էր մի բարձրահասակ գանգրամազ պատանի՝ ախացու աչքերով:

Առավոտները, մաշված ծծողական թղթապանակը թևի տակ, նա շտապում էր Օդեանի դուքսի գրասենյակը, որտեղ աշխատում էր որպես կրտսեր գործավար: Նրա նեղ սերթուկի արմունկները և շալվարի ծնկները մաշվածությունից փայլում էին: Պատանին այդ դավաճան փայլերը ծածկում էր թանաքով: Օդեանի դուքսի գրասենյակում ուղածիդ չափ թանաք կար:

Նա շատ վատ էր սնվում. սոխ էր ուտում և ջրախառն գինի էր խմում (Ֆրանսիայում վատ գինին նավթից էլ էժան է): Պատանին ատում էր սոխը և անտարբեր էր գինու նկատմամբ:

Նրա տան դիմացը մի փոքրիկ պանդոկ կար: Դռան վրա մի մեծ դդումի չափ, պղնձից սարքած սոճու կոն էր կախված: Պանդոկն այդպես էլ կոչվում էր՝ «Սոճու կոն»:

Երբեմն աշխատանքից հետո պատանին գալիս էր այստեղ և երկար ժամանակ ներծծում էր տապակած կարտոֆիլի հոտը: Հետո անփույթ կերպով նետում էր պանդոկատիրոջը.

— Մի քիչ կարտոֆի՛լ փաթաթեք...

— Բայց դուք արդեն քառասուն ֆրանկ ինձ պարտք եք,— բարկանում էր հայր Ժիրարդոն:

— Ա՛յ, մի քիչ որ սպասեք, հավատացնում էր նրան պատանին,— շուտով կհարստանամ և առատ կվարձատրեմ ձեզ:

Հետևանքը լինում էր այն, որ նա իր ձեղնահարկը մի՛ քիչ տապակած կարտոֆիլ էր տանում: Նրա պարտքը հայր Ժիրարդոյին գնալով մեծանում էր:

Մի գեղեցիկ օր էլ ախացու աչքերով բարձրահասակ գանգրահեր պատանին անհետացավ: Ձեղնահարկի նրա փոքրիկ սենյակը գրավեց մի ուրիշ պատանի, մաշվածությունից փայլող նույնպիսի քաթանե շալվարով:

Տարիներն անցնում էին: «Սոճու կոն» պանդոկն անկում էր ապրում: Ուսանողական աղքատ թաղամասում քարեսիրտ պանդոկատերը հարստանալ չէր կարող:

Հայր Ժիրարդոն վերջապես ստիպված եղավ փակել պանդոկը: Հիմա նա մի փոքրիկ վաճառակրպակ հաստատվեց ակնվականների Սեն-Ժերմեն թաղամասում, հույս ունենալով հարուստներից որևէ մեկը, գուցե ձանձրացած գետնասնկից ու շամպայնից, տապակած կարտոֆի՛լ ուզենա ուտել:

Մի անգամ նրա կողքին հայտնվեց զույգ աշխետ ձի լծած մի վարձու կառք: Սկզբում երևաց այծենուց կարված, արծաթե ճարմանդով կոշիկ հագած ոտքը: Հետո երևաց պարոնը՝ ամբողջությամբ:

Բալեգույն ֆրակ, ձյունասպիտակ ժաբո, այս բոլորի հետ՝ սպիտակող գանգուր մազեր և երկնագույն ախացու աչքեր...

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ԾՈՒՅԼԻ ՎԻՇՏԸ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ինչ լա՜վն էիր դու, իմ ամա՜ռ,
Նկել էիր հենց ինձ համար:
Ո՛չ գրիչ կար, ո՛չ թուղթ, ո՛չ գիր,
Ո՛չ դասագիրք, ո՛չ օրագիր:
Կանաչ անտառ, ուրախ ճամբար,
Ամբողջ օրը երգ էր ու պար:

Սեպտեմբերն էլ ասենք, վատ չէ,
Հով ու զով է, մրգի ծով է,
Թե այդքանով բավարարվեր,
Թե քեզ հանգիստ տվող լինե՛ր:
Բայց կթողնե՞ն, որ թափառես,
Մառ ու ճյուղեր թափահարես:
Առավոտ վաղ զանգն է ճնչում,
Քնաթաթախ դպրոց կանչում:
Դե, ուսիդ առ ծանր մի բեռ,
Տնից դպրոց հա տար ու բեր:

Էլի եկավ սեպտեմբերը,
Ա՜խ, ինչպիսի՜ անհամբերն է:
Չթողեց, որ մի շունչ քաշեմ,
Մի կուշտ խաղամ ու վազվզեմ:
Ուտեմ, քնեմ, ելնեմ, ուտեմ,
Ու ինձ համար հա պտտվեմ...





*Նկ. ՍԱՐԻ ԿԱԼԵՆՑԻ*

Սո՞ւրբ Աստվածածին: Հայր Ժիրարդոն խսկույն ճանաչեց ձեղնահարկի աղքատ պատանուն: Սա էլ ճանաչեց իր պարտատիրոջը, գրկեց նրան և սեղմեց լայն կրծքին, աշխատելով չճմրթել իր ժանեկավոր կրծկալը:

— Կարծեմ ես քեզ պարտք եմ, չէ՞,— հարցրեց լավ հագնված պարոնը:

— Ուղիղ երկու հարյուր ֆրանկ, հիմա փողն ինձ շատ պետք է,— պատասխանեց առևտրականը:

— Մոտս հիմա դրամ չկա, մեկ այնքան էլ շատ փող չեն տալիս,— հայտարարեց պարոնը:— Բայց ես առատորեն կվարձատրեմ քեզ, բարեկամ: Ես քեզ կվարձատրեմ... անմահությա՛մբ...

Եվ, պարմացած առևտրականի մեջքին թփթփացնելով, անհետացավ մի շքամուտքով, որի առաջ հեքթապահում էր ոսկե ուսադիրներով լիվրե հագած մռայլ մի դռնապան:

Երեք ամիս անցավ: Հայր Ժիրարդոն տուն էր վերադառնում: Այսօր նրան չէր հաջողվել նույնիսկ մեկ տապակած կարտոֆիլ վաճառել: Երևում էր գետնատունկն ու շամպայնը այնքան էլ շատ չեն ձանձրացնում ազնվականներին:

Նա ծռվեց անկյունը և քարացավ: Տասնյակ շքեղ կառքեր խցանել էին Մատյուրեն-Սեն-Ժակ փողոցը: Նրա պանդոկի փակված փեղկերի առաջ խռնվել էր ժողովուրդը: Փայլուն ցիլինդրներով գեղեցիկ հագնված պարոնները լաքած կոշիկներով հարվածում էին նրա պանդոկի փակ դռներին, բացականչելով.

— Շուտ դուռը բա՛ց, բարի՛ Ժիրարդո, մենք քաղցա՛ծ ենք:

— Ի՛նչ է պատահել, ինչո՞վ եմ արժանացել,— կարմացավ առևտրականը:

Մի պճնամոլ պարմացած նայեց նրան:

— Իսկ դու չգիտե՞ս, ծերո՛ւկ: Չէ՞ որ սա Ֆրանսիայի ամենամոդայիկ պանդոկն է, «Սոճու կոնը»:

— Մի՛ ծիծաղեք ինձ վրա,— աղաչեց խեղճ Ժիրարդոն:

Պճնամոլը գրպանից հանեց մաշ կապված մի հատոր:

— Կարդա՛ց գիտե՞ս:

Հայր Ժիրարդոն գլխով արեց:

Պճնամոլը բացեց գիրքը:

— «Կանքն հիմա վարդագույն լույսով է երևում...»— բացականչեց դուքսը: Հետո նա իր բարեկամների հետ ուղղվեց Մատյուրեն-Սեն-Ժակ փողոցի վրա գտնվող «Սոճու կոն» պանդոկը, որտեղ հարգարժան մետր Ժիրարդոն աքանչելի կերակրեց նրանց...»

— Ասացե՛ք, ո՞վ է գրողը,— ճչաց ցնցված առևտրականը:

Եվ որպես պատասխան լսեց.

— Ալեքսանդր Դյո՛ւման:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

# ԱՅՆ, ԻՆՉ ՉԷՐ ԱՐԵԼ ՖԱՐԱԴԵՅԸ, ԱՐԵՑ ՄԱՔՍՎԵԼԸ



ԱՐՏԱԿ ՌՈՍԿԱՆՅԱՆ

*Երկհարկանի առանձնատունը, ուր անցավ նրա մանկությունը, ուղղակի բնության գրկում էր: Նրա առաջին ընկերները եղան ծիերը, շները, կովերը, մի խումբ կենդանիներ, իսկ բույսերը բազմերանգ ու բազմաբնույթ դարձրին նրա աշխարհը: Երբ վրա էր հասնում ուշ աշունը, փոքրիկ Ջեյմսը հրաժեշտ էր տալիս բնությանը և ամբողջությամբ տարվում դռների կողպեքների, բանալիների և այլ առարկաների ուսումնասիրությամբ: «Ցո՛ւյց տվեք, խնդրեմ, ինչպե՞ս է այդ աշխատում»,— դիմում էր նա վարպետներին, երբ տեսնում էր որևէ բան սարքելիս: Երեք տարեկան էր, երբ «հայտնաբերեց», որ իրենց առանձնատան մոտով հոսող առուն հեռվում միանում է Ուրր գետին և գնում թափվում է ծովը... Ընդհանրապես բոլոր գետերը գնում թափվում են ծովը:*

*Երկրագործությունից վերադառնալիս նա իր հետ տուն էր բերում քարերի, ծիլերի, բույսերի հավաքածուներ և պահում այնքան ժամանակ, մինչև որ զորից վերադառնար հայրը: «Ինչո՞ւ այս քարն ավելի թեթև է, քան մյուսը, ինչո՞ւ սա կարմիր է, իսկ սա՝ սպիտակ, ինչո՞ւ այս ճյուղը ավելի բարակ է, բայց ամուր, իսկ մյուսը հաստ է ու թույլ, ինչո՞ւ այս բույսը հոտավետ է, իսկ մյուսը՝ ոչ...» Հայրը համբերատար պատասխանում էր որդու յուրաքանչյուր հարցին, տեղ-տեղ հորինելով, տեղ-տեղ պահպանելով գիտական ճշմարտությունը: Երևակայի բորբոքված երևակայությունը հունից հանում էր հորը: Իսկ հայրը անսովոր մարդ էր, նույնպես հետաքրքրասեր, ամեն ինչով զբաղվող: Կրթությամբ փաստաբան, կրթությամբ՝ ճարտարագետ, մարդիկ, ֆիզիկոս, գրականագետ, նրան առանձնապես ձգում էր ֆիզիկայի փորձարական կողմը: Երջանկությամբ էր ստեղծում յուրաքանչյուր ֆիզիկական փորձին և հրապարակում դրանց արդյունքները: Սակայն այդ հոդվածները նրան նշանավոր ֆիզիկոսի համարում չբերին:*

*Երևի այդպես էլ պետք է լիներ, ինչին չկարողացավ հասնել հայրը, հասավ որդին: Բայց հասավ հոր աջակցությամբ. առաջինը նա էր, որ կռահեց դարձավ որդու հանճարին:*

*Սկիզբը վատ էր: Էդինբուրգյան ակադեմիայի թվաբանության*



ուսուցիչը դժգոհ էր. «Նրա երևակայությունը խիստ սահմանափակ է,— ասում էր նա,— թվաբանությունը նրա բանը չէ»:

Հայրը չէր հուսահատվում, նա գիտեր իր որդուն, գիտեր, որ նա շուտով «կընտելանա» ակումբի միջին և կբացվի ամբողջապես:

Ջոն Մաքսվելը չէր սխալվում. ակադեմիայում ուսուցանվող թվաբանությունն ավելի շատ լուծելու արհեստ էր պահանջում, քան ազատ երևակայելու արվեստ:

Թվաբանությանը հաջորդեց երկրաչափությունը. եռանկյուն-քառանկյուն-բազմանկյուն-ուղղանկյուն պատկերներ, շրջանագիծ, աղեղ, լար: Հատուկ տրամաբանություն, դիտողականություն. Ջեյմսն իր տարերքի մեջ էր: Զարթնել էր «քնած» երևակայությունը. «Այսօր ես պատրաստեցի տետրաէդր, դոդեկաէդր,— գրում է նա հորը,— և երկու այլ էդրներ, որոնց անունները դեռևս չգիտեմ»:

Ակադեմիայի ուսուցիչները զարմացել էին: Նրա հարցերը երբեմն անլուծելի պրոբլեմների առաջ էին կանգնեցնում ուսուցիչներին: Աշակերտները մատով էին ցույց տալիս իրենց մաթեմատիկոսին:

Երբ Ջեյմսը տասնհինգ տարեկան էր, հայրը մի օր Էդինբուրգի թագավորական ակադեմիայի նիստերից մեկին մասնակից դարձրեց նրան: Քննարկվում էր, թե ինչպես շատ դարեր առաջ, երբ դեռ մաթեմատիկան ապրում էր իր մանկությունը, մարդիկ կարողացել են գծել էլիպս կամ օվալ: Ակադեմիկոսները խոսում էին և վիճում, վիճում էին և խոսում, ընդհանուր եզրակացության գալ չկարողանալով: Ահա հենց այդ թոհուբոհի մեջ Ջեյմսը գտավ, որ էլիպս գծելու համար մեր նախնիներին այնքան էլ շատ բան պետք չէր. երկու ասեղ և թելի մի օղակ: Ասեղները իրարից որոշ հեռավորության վրա ուղղահայաց կերպով խրել թղթի մեջ և օղակը հագցնել այնպես, որ շրջանակի նրանց: Եվ բավական է մատիտով ասեղների շուրջը պտտեցնել թելը, որ ստացվի էլիպս:

Իհարկե, մեր նախնիները չունեին ո՛չ թուղթ և, երևի, ո՛չ էլ ասեղ: Սակայն ինչ փույթ. նրանք կարող էին օգտվել սրածայր առարկաներից և, օրինակ, ավազի կամ նույնիսկ քարի վրա գծել էլիպս:

Այս սրամիտ ու պարզ եղանակը քննարկվեց թագավորական ընկերության նիստում և ընդունվեց միաձայն:

Պատանի Մաքսվելի անունը դուրս եկավ իրենց ակադեմիայի շրջանակներից:

(Շարունակելի)



**ՊԻՈՆԵՐ-ի փոստից**

## ԱՆՏԱՌՈՒՄ

Մեր դասարանի աշակերտներով գնացինք անտառ: Երբ տեղ հասանք, ափսոսացինք, որ մեզ հետ չէ մեր բուսաբանության ուսուցիչը: Դժվար էր առանց նրա օգնության իմանալ, թե ինչն ինչ է: Մեկ էլ մեր դիմաց դուրս եկավ մի ալեհեր ծերունի՝ հրացանն ուսին: Տեսնելով մեզ, նա շատ ուրախացավ և իմանալով մեր անտառ գալու նպատակը՝ խոստացավ մեզ ծանոթացնել անտառի բուսական և կենդանական աշխարհին: Նա մեզ առաջնորդեց իր խրճիթը: Մենք այնտեղ տեսանք կենդանիների մորթիներ և զանազան բույսերի հավաքածուներ: Եվ ինչպես ուսուցիչն է մանրամասնորեն պատմում դասը, այնպես էլ անտառապահ ծերունին մեզ բացատրեց անտառի բուսականության և կենդանական աշխարհի մասին:

— Արդեն 35 տարի է, անտառապահ եմ,— ասաց նա,— անտառը բնության զարդն է, սիրեցե՛ք այն: Պահպանեցե՛ք բույսերին և կենդանիներին: Լա՛վ սովորեցեք: Սովորեցեք և՛ դասագրքերից, և՛ բնությունից:

Մենք խոստացանք կատարել անտառապահ Լևոն պապիկի խորհուրդները, ու շնորհակալություն հայտնելով՝ զոհ և ուրախ վերադարձանք տուն:

ԳԱԳԻԿ ՄԱՐՈՒՔՅԱՆ

Ախթալայի № 2 դպրոց, 6-րդ Ա դաս.

Դպրոցական «Կարմիր գիրք»

## ՀՈՒ-ՆԱ-ԲԻ



ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ծառ կամ թուփ է՝ փշոտ ճյուղերով, 3–8 մետր բարձրությամբ: Ճյուղերը և ընձյուղները զիգզագաձև ծռմռված են: Տերևները կաշեկերպ են, մերկ, վերևի կողմից մուգ կանաչ, փայլուն, երկարավուն-ձվաձև: Ծաղիկները աստղանման են, 3–4 մմ տրամագծով, դեղնականաչավուն, ծաղկափթություններում փնջանման հավաքված: Ծաղկում է մայիս-հունիս ամիսներին:

# ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ ԹՌՉՆԱԲԱՆՆԵՐԻՆ

*Օրնիթոլոգիան՝ թռչնաբանությունը թռչունների կյանքի մասին գիտություն է:*

*Վերջերս ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ ավելի ու ավելի հաճախ են դիմում թռչնաբաններին:*

*Ինչո՞ւ:*

*Այդ հարցին ինքդ կպատասխանես, այս փոքրիկ հոդվածները կարդալուց հետո:*




## ԹՌՉՆԱՅԻՆ ԱԿՆՈՑՆԵՐ

*Վաղուց հայտնի է, որ գողող քանվորները և մետաղագործները առանց մուգ ակնոցների չեն կարող աշխատել: Վարորդները ճանապարհը չեն տեսնում, եթե հանդիպակաց մեքենաների լապտերների լույսն ընկնում է նրանց աչքերին: Իսկ թռչունը ժամերով կարող է նայել և նայել արեգակին, կուրացման ոչ մի վտանգ չզգալով:*

*Պարզվում է, որ փետրավորների աչքի թաղանթը սանրաձև է: «Սանրի» թափանցիկ թաղանթը կարող է հարմոնի պես ծալքեր առաջացնել, և այն ժամանակ ոչ մի ճառագայթ նրան չի ծակի: Իսկ մթնշաղին հարմոնաձև ծալքերը լրիվ բացվում են և չեն խանգարում լույսի ներթափանցմանը: Սանրերը կարծես թե փետրավորների աչքերի մեջ հագցրած պաշտպանական ակնոցներ լինեն:*

*Ուսումնասիրելով այդ բնածին մեխանիզմի աշխատանքը և կառուցվածքը, գիտնականները մշակեցին կրակի հետ գործ ունեցող աշխատողների համար ակնոցներ.*

*Այդպիսի ակնոցներ արդեն կան:*



Պտուղները գնդաձև են, մինչև 1—1,5 սմ տրամագծով, հասունանալիս՝ մուգ դարչնագույն կամ պղնձակարմիր երանգով:

Աճում է քարքարոտ ու խճոտ, չոր, արևահայաց լանջերում, մինչև 1500 մ բարձրության վրա: Կանաչապատման համար ևս կարելի է օգտագործել լերկ, քարքարոտ, հատկապես հողապուրկ լանջերի ձևավորման համար:

Հունաբին լատիներեն կոչվում է պիպիֆուս յուլուբա: Հարյուրամյակներ առաջ լայնորեն տարածված է եղել Հայաստանում: Այդ բույսի անտառակները հանդիպում էին ներկայիս Թումանյանի ու Նոյեմբերյանի շրջանների տարածքում, Վայքում, Կենտրոնական Հայաստանում ու Զանգեզուրում: Ավելին, Հայաստանում լայնորեն մշակվում էր հունաբիի կուլտուրական ձևը, որը կուրկ է փշերից և պտուղները բավականին խոշոր են: Շատ հին ժամանակներից այս բույսը մեծ ուշադրության է արժանացել, պտուղների բուժիչ հատկության շնորհիվ, որոնք իջեցնում են արյան ճնշումը, բուժում մի շարք սրտանոթային հիվանդություններ և այլն: Արտակարգ համեղ և սննդարար են, պարունակում են մեծ քանակությամբ շաքար, վիտամիններ:

Մի ժամանակ հունաբիի պտուղները վաճառվում էին շուկայում: Ցանկացած ժամանակ կարելի էր դրանք ձեռք բերել: Սակայն ներկայումս մեր բոլորի աչքի առաջ այս բույսը աստիճանաբար գործածությունից դուրս է գալիս: Դրա պատճառը ոչ թե ավելի կորեղ դեղամիջոցների հայտնաբերումն է, այլ այն, որ հունաբին անհետանում է, նրա բուսուտները տարբեցտարի պակասում են կամ անհետանում խսպառ: Մի ժամանակ այս ծառատեսակը լայնորեն մշակվում էր նաև Երևանում, սակայն այժմ ամբողջ քաղաքի տարածքում ընդամենը մի քանի ծառ հազիվ գտնվի: Դրանցից 2-ը աճում են Կարապի լճից մի փոքր վերև՝ Լերմոնտովի և Տերյան փողոցների հատման վայրում:

Ներկայումս հունաբին խիստ պահպանության կարիք ունի: Վերջերս լույս տեսած ՍՍՀՄ-ի «Կարմիր գրքում» այս բույսը նշված է որպես շատ հազվագյուտ, անհետացման վտանգի ենթակա տեսակ:

Անհրաժեշտ է կազմակերպել այս արժեքավոր ծառատեսակի պահպանումը և հետագա տարածումը: Շատ մեծ անելիքներ ունեն Թումանյանի, Նոյեմբերյանի, Իջևանի, Շամշադինի, Գորիսի, Ղափանի, Մեղրու շրջանների, ինչպես նաև Վայքի ու Արարատյան դաշտի ցածրադիր գոտու բնակավայրերի դպրոցականները: Անհրաժեշտ է հաշվառման ենթարկել պահպանված բույսերը, կազմակերպել դրանց խնամքը, պայքարել վնասատուների և հիվանդությունների դեմ, հավաքել պտուղները, սերմերը ցանել հունաբիի բուսուտներում և ամենօրյա խնամք տանել սերմնաբույսերի նկատմամբ: Այս հավաքեպ ու խիստ հետաքրքիր տեսակը կարելի է աճեցնել նաև դպրոցամերձ և տնամերձ հողամասերում, սերմերը հետագայում լայնորեն օգտագործելու նպատակով:

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐ

Երբ համապատասխան ուսուցումից հետո սովորական սերինոս սարյակին տեղավորեցին «անդուռ և անպատուհան» մի վանդակում, որտեղ թառի ձողերից մեկը էլեկտրական արեգակի անջատիչն էր, հրաշք տեղի ունեցավ:

Սարյակը ճշտորեն միացնում և անջատում էր իր լուսային օրը: Նույնիսկ երկարացնում և կարճացնում էր այն՝ տարվա եղանակներին համապատասխան:



Օրվա ռեժիմը, որն ինքն իր համար ստեղծել էր սարյակը, գիտնականների կարծիքով ամենահաջողն էր ոչ միայն թռչունների, այլև ոչ սովորական պայմաններում ապրող մարդու, ինչպես օրինակ դրեյֆող կայանի վրա աշխատող բևեռախույզի համար:

Սերինոս սարյակի վրա կատարված այս փորձը ամրացրեց գիտնականների այն կարծիքը, թե յուրաքանչյուր կենդանի օրգանիզմ ներքին բիոլոգիական ժամացույց ունի, և օգնեց նրանց բևեռախույզների համար օրվա՝ գիտականորեն հիմնավորված ռեժիմ սահմանել:

# ՎԵՐԱՀՍԿԻՉ ԱՂԱՎՆԻՆԵՐ

Մոսկվայի մի գործարանի ցեխերից մեկում աղավնատուն բնակեցրին: Աղավնատան բնակիչներին, բոլորին անխտիր մասնակից դարձրին տեխնիկական վերահսկողության աշխատանքներին: Կենսաբանները, գիտենալով աղավնու աչքերի սրատեսությունը, թռչուններին համձնարարեցին... առանցքակալների համար գնդիկներ տեսակավորել:

Վարժեցման կուրսից հետո վանդակը՝ մեջն աղավնիներ, դրեցին կոնվեյերի վրա: Դիտելով ժապավենի վրայով հոսող լավ-




որակ արտադրանքը, աղավնին կտցահարում էր «Ամեն ինչ կարգին է» ազդանշանին ամրացված թիթեղիկը: Եթե կոնվեյերի վրա հայտնվում էին նույնիսկ մարդկային աչքի համար անտեսանելի ճեղքեր ունեցող մասնիկներ, թռչունն անմիջապես կտցահարում էր «Կանգ առ» ազդանշանը:

— Մի քանի օր չանցած,— հիշում են այս նորամուծության հեղինակները,— մեր վերահսկողները հանկարծ սկսեցին քմահաճություններ անել և անխտիր խոտանել ամբողջ արտադրանքը: Շատ անսպասելի պատճառով՝ թռչուններին դուր չէր եկել գնդիկների հայելանման մակերեսի վրա մարդկանց մատների հետքերը: Անհրաժեշտ եղավ արտադրանքը նախապես մաքրել:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ ՓՈՒՓՈՒԼԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Կենսաբանները վաղուց էին նկատել, որ թռչունները սիրում են առույգ, ուրախ մեղեդիներ: Բայց ինչպե՞ս կիրառել այդ պրակտիկ կյանքում:

Մինսկի թռչնաֆաբրիկայում որոշեցին աճան հավերի համար հատուկ ծրագրով համերգներ տալ: Արդյունքներն անսպասելի էին: Թռչուններն սկսեցին արագ գիրանալ, իսկ ամենակարևորը՝ սկսեցին ավելի հաճախ ձու ածել:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ



# ՊԱՊԻԿԻ ՀԵՏ



ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

Առողջարանից պապը դարձավ տուն,
Լսեց՝ նոր տուն են տվել իր որդուն:
Նոր տունն շտապեց: Տեսավ թոռանը
Կանգնած է իրենց նոր տան դռանը:
Ուզում է մի մեծ սեղան վեր հանել:
Մոտեցավ նրան.— Թող, թող ես տանեմ:
Թոռը թե.— Պապի՛, կա՛ց մի բան ասեմ:
Պապը թե.— Հիմա չեմ կարող լսել...
Ու սեղանն դսեց.— Ո՞ր հարկն է ձերը:
— Պապի՛, տասներորդ հարկն է մերը:
Երբ որ տասներորդ հարկը բարձրացավ,
Վայր դրեց սեղանն ու թոռին դարձավ,
Շնչելով ուսը.
— Հիմա կարող եմ քո խոսքը լսել:
Թոռը թե.— Պապի՛, չթողիր ասել,
Մեր մուտքը այս չէ, այլ այն մյուսը...



# ԺԱՄԱՆՑ «ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ»

1-ին գծագրում գրեք քաղաքների անուններ, որոնք գտնվում են.

1. ՍՍՀՄ-ի ասիական մասում: 2. Վենեսուելայում: 3. ՍՍՀՄ-ի արևելյան մասում: 4. Ղազախստանում: 5. Սուդանում: 6. Բրազիլիայում: 7. Ինդոնեզիայում:

2-րդ գծագիր: Տրված 9 շրջանագծերը 4 ուղիղ գծով միացնել այնպես, որ մատիտը ոչ մի անգամ չկտրվի թղթից: Միացումը սկսել 1-ով համարակալված շրջանից: Ճիշտ կատարելով կկարդաք. 1. Առողջարան՝ ՍՍՀՄ-ում: 2. Լեռնաշխարհ՝ ՍՍՀՄ-ում:

3-րդ գծագիր: Պատասխանները սկսվում և վերջանում են «Ա» տառով: 1. Առողջարան՝ ՍՍՀՄ-ում: 2. Գետ՝ Հայկական ՍՍՀ-ում: 3. Գետ՝ ՍՍՀՄ-ում: 4. Քաղաք՝ Չիլիում: 5. Պետություն՝ Եվրոպայում: 6. Ինքնավար հանրապետություն՝ Վրացական ՍՍՀ-ում: 7. Մայրաքաղաք՝ Ասիայում: 8. Քաղաք՝ Արևմտյան Հայաստանում:

Լուծելով 3 առաջադրանքները, գծագրի արտաքին մասի եռանիշ թվերը փոխարինեք համապատասխան տառերով: Եռանիշ թվի առաջին թիվը ցույց է տալիս առաջադրանքի համարը, երկրորդը՝ հարցի համարը, երրորդը՝ պատասխանի համապատասխան տառը:

Ճիշտ փոխարինելուց հետո կկարդաք 4 նշանավոր ճանապարհորդների անուններ:

*Կազմեց՝ ԵՎԳԵՆԻ ՄԱՄՅԱՆԸ*


Լույս է տեսնում 1928 թվականից

№ 9 սեպտեմբեր 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04399: Պատվեր 1633: Տպաքանակ՝ 51800: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16 IX 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի 2. Սեկապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



ԳԻՇՅԱՆ ՍԵՐԳԵՅ 14 տ., ք. Նոյեմբերյան



ՇԵԿԻԿՅԱՆ ԱՐՄԱՆՈՒՇ, 12 տ., Արխազական ԻՍՍՀ, գ. Շահումյան



ՏՈՆԱԿԱՆՑԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, 12 տ., ք. Արթիկ



ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՁԵՄՖԻՐԱ, 12 տ., Արովյանի շրջ., գ. Զառ